ԱԶԳԱՅԻՆ ՄԱՏԵՆԱԴԱՐԱՆ

ՃԻԱ.

# ՍԵՒԱՆԱՅ ՎԱՆՔԸ



ՎԻԵՆՆԱ
ՄԽԻԹԱՐԵԱՆ ՏՊԱՐԱՆ
1929

# ՍԵՒԱՆԱՅ ՎԱՆՔԸ

ԳՐԵՑ

ԳԻՒՏ ԵՊԻՍԿՈՊՈՍ



ՎԻԵՆՆԱ
ՄԽԻԹԱՐԵԱՆ ՏՊԱՐԱՆ
1929

# ՍԵՒԱՆԱՅ ՎԱՆՔԸ

## ՄԱՍՆ ԱՌԱՋԻՆ

### Ա.

Պարսկական ու տաճկական լծից հայերին ազատագրող Ռուսաստանը իր տիրապետութեան տակ անցնող հայ ժողովրդի մէջ աստիճանաբար սկսեց մտցնել ռուսական կարգ ու կանոնը:

Ասիական արեւելեան պետութիւնների հպատակ հայերը սովոր չէին որոշ իրաւակարգի, օրինապահութեան, քանի որ աւատատու եւ աւատառէր իշխանները քմահաճոյքի, անձնական տրամադրութեան ու բնաւորութեան խառնուածքի հիման վրայ տիրել եւ ոչ թէ կառավարել են այդ ժողովրդին:

Ասիական դրութիւնը հայ ժողովրդին ուժասպառ անելով, անտանելի կամ [illegible] պարտաւորութիւններ յարուցանելով, չէր դրկում նրան իր ազգային ինքնուրոյնութիւնը արտայայտելու հնարաւորութիւնից, իսկ ներքին կեանքը ազգային սովորութիւններով անօրինելուց:

Հայ վանքերն էին հայ ժողովրդի ազգային ամբողջութեան ու ինքնուրոյնութեան պահպանութեան կենդրոնները։ Վանքերն էին նաեւ վարչական կենդրոններ՝ առաջնորդարաններ, ուստի եւ մահմետական տիրապետողները այդ կենդրոնների եւ դրանց առաջնորդների վրայ էին առաւելապէս ուշք դարձնում։

Այս դրութեամբ հայ ժողովրդի մի խոշոր մասը եւրոպական միապետական կազմակերպութիւն ունեցող ռուսաց պետութեան իշխանութեան տակ անցաւ, ուստի եւ ռուս իշխանութիւնը հայ ժողովրդի ռուսացման ու ռուսական պետութեան հետ միացման քաղաքական աշխատանքը հայ եկեղեցու եւ վանքերի համար կանոնադրութիւն մշակելուց սկսեց, այսպէս 1836ի պօլօժէնեան, որը որքան եւ հայ աղբիւրներից քաղուած տեղեկութիւնների հիման վրայ էր կազմուած, սակայն իր մէջ կրում էր բիւրօկրատիկ կառավարութեան տարրեր եւ հայ եկեղեցուն ռուսական միապետութեան շահերին ծառայեցնելու քաղաքական յօդուածներ։ Ռուս եկեղեցին Պետրոս Մեծից այդ վիճակին էր հասել, բնականաբար ռուս միապետութիւնը օտար եկեղեցիների համար էլ նոյն քաղաքականութեանը դիմեց։

Այս կանոնադրութեամբ հէնց հայ եկեղեցին իր աւատական վիճակից ելաւ, միապետական ոգու կնիք ստացաւ ու աստիճա-

նորար սկսեց աւելի մի պաշտօնական, սուր ձեւականութեան ենթակայ հիմնարկութիւն դառնալ, կորցնելով իր կենսունակութիւնը, իր ժողովրդական սկզբունքների մի քանիսը:

Սրա վրայ աւելցաւ եւ Թուրքահայ մտաւորականների 60 ական թուականների շեշ-տուած «մտրակողական» քննադատական շարժումը ծնունդ առած Հիւսիսում, որոնք ունենալով եւրոպական պետութիւնների մի քանի առաւելները, որոնք սակայն ներկայ դէպքում մեր ժողովրդի զարգացմանը օգ-տակար չեղան:

Հայ եկեղեցու, վանքի արժէքը մեր կեանքում մանաւանդ օտարի լծի տակ ապրելու շրջանում կենտրոնացման ու ազ-գային ամբողջութեան հաւաքման նպատակ է եղել: Աշխարհիկ զարգացման ջատագով մտաւորականները կենդրոնից, բուն ժողո-վրդից կտրուած լինելով չկարողացան ըմ-բռնել այդ ուրոյն վիճակը - մամուլի, մասնա-ւոր գրուածքների միջոցով հայ եկեղեցու բարեկարգութեան կարեւոր հարցը վերջը հայ եկեղեցու դէմ վստահութեան, անգամ հակաեկեղեցական քարոզութեան վերածեցին 1905 ի ռուսական յեղափոխու-թեան շրջանում, որի հետեւանքները եղան հայ եկեղեցու արժէքի նսեմացումը, այդ պատմական հիմնարկութեան թուլացումը, վանքերի հետզհետէ հանդչիլը ապա եւ ամա-յացումը հայրենի գնահատելի յիշատակնե-

1*

րի (որոնց պահպանութեան գործով այժմ նորից սկսել են զբաղուել), վերջացնելու հայ մարդու մէջ կրօնական անտարբերութիւն յառաջ բերելը:

Այդ երկու մեծ ոյժերը ռուս քաղաքականութիւնը եւ հայ մասայինների անընդհատ հակաքարոզը հայ եկեղեցուն եւ եկեղեցականներին հանեցին իրենց բուն կոչման ուղիից, դարձրին նրանց աշխարհիկ ոգով գործող ու տարրող: Այժմ զգացւում է այդ ուղութիւնների արդիւնքը:

Ընդհանուր հոսանքի ենթարկուեց եւ Սեւանայ մենաստանն, որ միակ անապատն է ուսումհայոց ու ան էլ դարձաւ ճգնարանից մի սովորական վանք: Եթէ այժմ էլ կան հետաքրքրուողներ մասայիններից Սեւան գնացողներ, այդ տասնեակներ բնութեան սիրահարներն են: Շրջակայքի ցեղերից ուխտի եկող հայ գիւղացիները հին աւանդական-պատկենական սովորութեամբ են գնում ուխտի, այն էլ տարուէ տարի պակաս թւով ցոյց տալով ուխտաւորների ջերմեռանդութեան ու ուխտի գնացողի նպատակի գիտակցութիւն:

Նախկին ուսումնասիրողի այս միակ անապատ ճգնարանը դարձաւ ԺԹ-րդ դարու ընթացքում մի սովորական վանք, որի արժէքը այժմ վանքի կցուած վրայ շինուած լինելը եւ Գեղամայ ծովակում գտնուելն է եւ ոչ այն ուսումնասէր եւ տաքրինի կրօնաւորներ ունենալը, որոնցմով Սեւանայ անա-

պատը Գեղարքունեաց աշխարհում երբեմն երբեմն ուշադրութ. էր դարձնում՝ կաթողիկոսներ տալով Հայ ժողովրդին, իրեն մօտ քաշելով Հայ իշխաններին: Կմախքացման շրջանն ապրեց յատկապէս Նախկին ռուսա-Հայ եկեղեցին ԺԹ.րդ դարում, որը Հետ եւ Սեւանայ մենաստանը: Այդ պատմական Հասարակական զարգացումը աւելի ըմբռնելի կը լինի, երբ Համառօտակի վերյիշենք այդ խոՀերի խոկումների վայր մենաստանը, որ Հին եւ նոր աստուածների յաւիտենական ուժեղ թափով պայքարն է կատարուել դարեր շարունակ, որ այնքան իմաստալից ու էլ աւելի գեղարուեստօրէն նկարել է Լ. Շանթ իր «Հին Աստուածները» դրամայում:

## Բ.

Սիւնեաց աշխարհի երրորդ գաւառը կազմող Գեղարքունին, Հին խալդերի տարեստանցոց դէմ մղած անհաւասար ու երկար պատերազմների ասպարէզն է եղել, ու իրենց լեզուով Գեղամայ ծովակին Սեւան (ծովակ) անունը տալով, ծովափնեայ ժայռերին սեպաձեւ արձանագրութիւններ թողնելով խալդերը անհետացել են, ժառանգութիւն թողնելով այդ ամէնը Հայերին:

Լեռնաշխարհ, խորաձոր, սեպաձեւ ժայռերով, խոր այրերով Հարուստ Սիւնիքը Բագրատունիների ձեռքով Այրարատի քաղաքական կեանքի վերածնութեան շրջանի

սկզբում խոշոր դեր է կատարում հայ մտքի զարգացման համար իր ամուր տեղերում ապաստանարան ընձեռելով Թ—Ժ-րդ դարում Փոքր և Մեծ Հայքի որոշ տեղերից յունական հալածանքից հեռացող կրոնաւորներին։ Յունաց Ռոմանոս կայսրը հալածանք է սկսում հայ եկեղեցականների դէմ, ի թիւս որոնց և կրոնաւորների, որոնց ամենալաւ ապաստանարանը դառնում է Սիւնեաց աշխարհը։

Կրոնաւորների և ճգնաւորների համար աշխարհի մարդկանց հետ յարաբերութեան ամենայն հնարաւորութիւնից զուրկ լինելը, դժուարամատչելի տեղերը ամենակարեւոր պայմաններից մէկն է, իսկ Սիւնեաց աշխարհը հէնց այդպիսին էր. «ամուրք անտառիկք ի մարդկան հնարից հեռացեալք են» ասած է այդ երկրի դասակ պատմիչ Օրբէլեանը։

Բագրատունիների հետ խնամէական կապ հաստատելով՝ Աշոտ իշխանաց իշխանի դուստր Մարիամ իշխանուհին կնութեան առնելով Վասակ Գաբուռ Սիւնեաց իշխանը, ինքը և իր յաջորդները և իրենց կանայք սկսում են երկիրը ճոխացնել մենաստաններ, անապատներ, եկեղեցիներ կառուցանելով, կարծես մրցութեան մտնելով Բագրատունիների հետ, որոնք իրենց հերթին Անիից սկսած վանքեր կառուցանելով դէպի Սիւնեաց երկիրն են գնում։

Բագրատունիք Հրազդանի ափերն էին

նկարազարդում երկնասլաց վանքերով, Սիւնեաց իշխանները Գեղամայ ծովակի ափերին էին վառում կանթեղներ «Հրեշտակերամ կրօնաւորներ եւ աստուածաբնակ սրբարաններ» շինելով:

Արաբական արշաւանքներից յետոյ աւերած Հայ աշխարհի սիրտը կրկին բաբախել էր. վերածնութեան շրջանն էր սկսում Թ—Ժ. րդ դարում զարգանալով մինչեւ ԺԳ. րդ դարը, ձեռնտուութեամբ Հայ իշխանների եւ Հայ մտքի աշխատաւոր վանականների: Չափազանցութիւն չհամարենք Օրբէլեանի այն տեղեկութիւնը, որ թաթարներից ապատուում են 150 մենաստան: Անշուշտ այս բոլոր մենաստաններն էլ կենդրոններ չէին գրի, գրականութեան, արուեստի զարգացման, սակայն դոքա Հայ մարդու ուրոյն կրթութեան ձգտման հանգրուան—ապաստարաններ էին, մտքի ամրութիւններ ընդդէմ խաւար հակառակ տարրի քայքայման եւ ապազգայնացման:

Գեղարքունեաց ծովակից ելնող մինչ Հրազդան գետի վերայ կային Թեղենեաց, Ս. Աստուածածնի, Նեղուցի (Արզական գիւղի մօտ), Բջնու, Մաքրավանքի, Կեչառիսի, Կարինիսի վանքերը: Սեւանայ վճիտ ծովակը զարդարուած էր Սեւանայ, Մարգազանեաց, Ծովակայ, Վանեվանից, Կոթայ Ս. Աստուածածնի (այժմ Ն. Այրիման) եւ այլ վանքերով եւ անապատներով: Սիւնիքն

ինքն եւ Գեղարքունեաց սահմանակից Վայոց ձորը ունէին եւ հարուստ էին անտառնե-րով, այնպէս որ Բաղաց գաւառում (Ղա-փան) ըստ Օրբէլեանի կար 48 վանք, Սի-նիք ինքն ունէր 18 վանք, Տաթեւ, Երիցա-վանք եւն, Վայոց ձորն 6 վանք, Խոտակե-րից, Թանահատ, Գնդաց վանք, որի համար պատմիչն ասում է թէ Սիւնեաց Սոփիա ազ-կինը չինել տալուց յետոյ ասում է, «Մա-տանի էր անակն Վայոցն ձոր, չինեցի զսա եւ եդի ակն ի վերայ»։

Սիւնեաց աշխարհի վանքերի մէջ հոյա-կապ էր Տաթեւի վարդապետարանը (Օր-բէլեան 1910, էջ 133 եւ 226), աչքի էր ընկ-նում Վայոց ձորում Խոտակերաց վանքը, Գեղարքունիքում Մաքենոցաց (Օրբէլ. 132-133) այստ եւ Սեւանայ անապատը, որի խա-կական անապատական կեանքի հիմնադիրը պէտք է համարել Մաշտոց վանականին, յե-տոյ ընտրուած կաթողիկոս (Թ. դարում), որ ապրում էր միահանդերձ եւ բոկոտն (Կիր. Գանձ. էջ 45), որը «լոկ բանջարով զընդհանուր պէտս վճարեալ ապրէր» (Յովհ. Կաթ. Դրասխանակերտցի, էջ 230)։

## Գ.

Ճգնաւորական կեանքը յատկապէս Գ. եւ Դ. դարերում տարածուեցաւ քրիստո-նէական աշխարհի մէջ, ի թիւս որոց եւ Հայոց աշխարհը։ Գրիգոր Լուսաւորչի հա-

մար Ագաթանգեղոս (գլ. ՑՀՋ) ասում է որ «երթեալ... յայրս եւ ի քարանձաւս երկրին բնակեալ լինէր եւ ի կատարս լերանց»: Հոգեւորականների միայն յատուկ չէր աշխարհից հեռանալը, այլ եւ աշխարհականները, իշխանները, որոնք կրօնի ուժեղ ազդումների համար յարմարագոյն տեղ՝ անապատներն էին գտնում: Մեզանում Լուսաւորչի ամոլ լծակից Տրդատն եւս «սիրեաց զվարս միայնաւորութեան որպէս զսուրբն Գրիգոր»: Լուսաւորչի օրինակը խրախուսական էր եւ Փինդ. եպ.-ը ըստ Բիւզանդի պատմութեան (Գ. 16) «էր տեսուչ ամենեցուն, որք միանգամ վասն սիրոյն Աստուծոյ յաշխարհէ էին մեկնեալ եւ յանապատս բնակեալ...»: Ճգնաւորական կեանքը շարունակուեց եւ Թ. դարում առաւել զարգացաւ: Յովհաննէս կաթողիկոսը տեսել էր Սեպուհ լերան վրայ խարազնազգեստներ, կրօնաւորներ, որոնք «առ ստորոտով լերինն կալեալ կայանս ...զհարկաւոր պէտս մարմնոյն վճարէին»:

Այս օրինակ կենցաղի յարմար վայրերից էին Սիւնական աշխարհը, Վայոց ձորը. եւ կենցաղը զարգացաւ, առաջ բերելով համայնական կենցաղ վարող խստակրօններ. «էին յոյժ բազմութիւնք հաւաքեալք ի հանդերձից եւ ի մարմնաւոր կերակրոց եւ ցրուեալք ընդ քարանձաւս եւ ընդ խորաձորս վայրեցն

մշտնջենաւոր աղօթից պարապէին . . .» (Օրբէլ. ԽԴ.)։

Օր ու գիշեր աղօթող եղբայրներ էին դրանք, որոնք խմբերի բաժանուած «մշտապաշտօնք էին», մի խումբը աղօթում էր, միւսը հանգստանում եւ այսպէս անվերջ եւ անընդհատ։ Այս օրինակ կենցաղով էր Գեղարքունիքում Մաքենոցաց վանքը, որը իր ուրոյն աշխարհայեացքի տէր մարդիկը ունէր։

Այսպիսի միջավայրում սնւում էր Սեւանայ անապատի հիմնադիր Մաշտոց վանականը, որը Բագրատունեաց աշխարհից եկելով բնակւում է Սիւնեաց երկիրը եւ ճգնաւորի ընտրում Սեւանը։ Մինչեւ Մաշտոց Սեւանայ անապատ լինելու մասին եղած աւանդութիւնները անորոշ են։

Սեւանի անապատ դառնալուն բաւական նպաստում էր այն հանգամանքը, որ նա գտնւում էր կղզու վերայ։ Գեղամայ ծովակի հիւսիս արեւմտեան ծայրում գտնւող այդ կղզին ընդ ամէնը 850 մետր երկարութիւն 300 մետր լայնութիւն ունի։ Կղզու վրայ քիչ ծառեր կան, հարուստ է ծաղիկներով, ամառը գրաւիչ օդ ունի, ձմեռը ցրտաշունչ է։ Խոկումների, առանձնանալու յարմար վայրեր ունի։

Այժմեան Սեւանայ մենաստանն այցելողը կը տեսնէ եւ կը լսէ, որ Մաշտոց ճգնաւորական կեանքի դժուարին ձեւեր է ստեղ-

ցել, ապրելով նաեւ Սեւանայ կղզու դիմաց գանուող «Մաշթոցներ» կոչուող բլրում, ուր այժմեան Դիլիջան Երեւան տանող խճուղին անցնում է, ապա Սեւանայ կղզու արեւելեան մասի ծովի խորագոյն անկում ծովահայեաց ժայռի դմուարամատչելի այրում, չուրջ ինը տարի, ապա Հարաւային Ծովափնեայ անապատի մօտ կառուցուած Հայրու մի մարդ տեղաւորող խուցում, ապա կղզու գագաթում, կարծէք թէ փորձելով ճգնաւորական կենցաղի բոլոր ձեւերը։

Սեւանում հեթանոսական հին տաճարի տեղ Մաշտոց քրիստոնէական խաչն է բարձրացնում նորից, եթէ ընդունենք մինչ որ Լուսաւորիչն այստեղ կրօնաւորներ է ուղարկել եւ ինքն ապրում էր «ընդովք թրջելով» (Աստղիկ Գ.3)։

Սիւնեաց Վասակ Գաբուռի կինը Մարիամ ի յիշատակ իր հանգուցեալ ամուսնու վանքեր է չինում Գեղարքունեաց աշխարհում՝ ապա Մաշտոցի համբաւը լսելով գալիս է Ցամաքաբերդ ու Մաշտոցի ձեռնաւորութեամբ չինում է Առաքելոց ու Մարիամ Աստուածածին վանքերը (874)։ Այստ իշխանաց իշխանն ալ գալիս է «ի տեսութիւն սրբոյ հօրն» — Մաշտոց վանականին եւ նուիրում է բաս ամանց կայարից, բաս այլոց Փասից նուէր ստացած խաչափայտի մի փոքրիկ մասը, աստուածընկալ սուրբ նշանը, որը ցայսօր մնում է անապատում եւ Գե-

դարքունեաց ու Ծաղկաձորի շրջանի ամենամեծ սրբութիւնն է, որին ուխտի գնում են ամէն տարի ահագին խմբերով, իշխանը նուիրում է նաեւ հողեր ու կալուածներ (Օրբէլ 218):

Մաշտոց անապատի եւ վանական կեանքի հիմք դնելով գրաւում է եւ գիտութեամբ, խմբագրում է այն ծիսարանը, որ ցայսօր իւր իսկ անունով «Մաշտոց» կոչւում է (Հմմտ. Կիրակոս էջ 45): Գէորգ Բ. Գառնեցու մահուանից յետոյ ընտրւում է կաթողիկոս 897ին, վարում է այդ պաշտօնը 7 ամիս միայն եւ վախճանւում է 898թուին, թաղւում է Գառնիի մէջ (Ասողիկ էջ 147):

Եթէ ժամանակի անապատներից ոմանք յայտնի էին իբրեւ անհանգիստ, մշտապաշտօն վանքեր (օրինակ Թանահատ, Երիցվանք), ոմանք տնանկների, աղքատների ապաստանարան (ինչպէս Հոռոմոսի վանք), ապա Սեւանը Մաշտոցի շնորհիւ դառնում է ընթերցասիրաց անապատ, ուր որ աղօթքին ընթացակցում էր ընթերցասիրութիւնը, այնպէս որ Թ—Ժ-րդ դարում Սեւանը դառնում է ուսումնական կենդրոն (Օրմանեան, Ազգապատում էջ 1158): Այս շրջանում բացի Մաշտոցից Սեւանի միաբաններից ընտրւում են երկու կաթողիկոս՝ Ստեփաննոս 970 եւ Սարգիս 992 թուին, վերջինիս մասին Ասողիկ ասում է որ ուսումնական անձ էր (էջ 276):

Սիւնեաց աշխարհի ծաղկման շրջանում այսպիսով Գեղարքունիքն Սևան անապատով Թ—Ժ. դարերում կարևոր դեր է խաղում, մի կողմից ճգնաւորներ և միւս կողմից գիտնականներ տալով։

Դ.

Անապատական կեանքի վանքերի ծաղկման երկրորդ տեսանելի շրջանը մեզանում սկսւում է դարձեալ Սիւնեաց աշխարհից— Մեծ Անապատից ԺԷ.րդ դարում, Ծաւ Արրատի արշաւանքից և հայերի մեծ գաղթից յետոյ։ Այդ ծաղկման շրջանում վերակենդանանում է նաև Սևանայ անապատը և շարունակում է իր կենդանութիւնը պահել ցայսօր, ի հարկէ հետզհետէ հասարակական-պատմական հանգրուաններին և ազդեցութիւններին տակ. փոխելով իր նպատակը, անապատական կենցաղի ձևերը։

Շուրջ 7 դարու պատմութիւնը՝ Թ.—ԺԷ. Սևանի անապատի անորոշ է, խիստ հատակոտոր տեղեկութիւններ կան, որոնք նորութիւն չեն տալիս։

. ԺԷ.րդ դարու սկզբում, Այրարատի աւերումից և ժողովրդի տեղահանութիւնից յետոյ Սիւնեաց աշխարհը, որ համեմատաբար քիչ էր տուժել. նորից սկսում է հայ գրականութեան, գիտութեան, հայ ժողովրդի մշակոյթով պարապելու պատուաւոր

աշխատանքը և այդ տեղից ծաւալում սփռում է զանազան կողմեր:

Վերածնութեան հիմնական մանրամասն տեղեկութիւնները տալիս է Առաքել Վ. Դաւրիժեցի իր պատմութեան ԽԱ.—ԽԹ. գլուխներում, փոքրիկ ընդհատումներով նկարագրում է վերածնութիւնը Մովսէս և Փիլիպպոս կաթողիկոսների ժամանակ, որը շարունակւում է առաջ յաջորդ հայրապետների օրօք:

Մեծ գաղթից յետոյ Հայ երկիրը ամայանում է, խորտակւում է, վանքերն էլ անտէր ու անտիրական մնալով աւերւում են: «Բոլ եկեղեցիք և վանորայք ամենեքեան անշուք և անպատիւք, բնաւին կողոպտեալք ի զարդուց և ի սպասուց, մինչ զի և սուրբ սեղանն եւս ամենեւին մերկ և բաց: Բազմաժամանակեայ փակեալ դրամբ խուսալր...» եւն եւն (էջ 290):

Գիրն ու դպրութիւնը վանքերում էր տեղաւորուած, երբ սրանք խափանւում էին, բնական է որ դպրութիւնն էլ մոռացութեան էր տրւում «ոչ բնաւ ընթեռնուին գիրս, ասում է պատմագիրը, այլ էին փակեալ և լռեալ մատեանք աստուածայինք...» (էջ 290): Խիստ մռայլ գոյներով է նկարագրում Դաւրիժեցին մինչև վերածնութիւնը եղող կրօնաւորների, առհասարակ հոգևորականների կեանքը (Հմմտ. էջ 288—289):

Այսպիսի անմխիթար վիճակ ունէին

վանքերն ու կրօնաւորները, մինչեւ որ Սարգիս եպիսկոպոսը եւ Կիրակոս երէցը ԺԷ․րդ դարու սկիզբը մեծ անապատի հիմերն են դնում Սիւնիքում, որը ըստ Պատմիչի «եղեւ մայր եւ ծնող ամենայն անապատաց եւ առիթ լուսաւորութեան աշխարհիս Հայոց» (էջ 254)։ Յիշեալ բարենորոգիչներին աջակցում էին Ներսէս Մոկացի, Ստեփանոս, Դաւիթ եպիսկոպոսը։ Իսկ Կարապետ եպիսկոպոս էջմիածնեցի «գնաց ի Սեւան կղզին եւ դայն տեղին շինեաց անապատ եւ կայ հաստատ մինչեւ ցայսօր» (էջ 253)։

Ըստ երեւոյթին Սեւանայ անապատն էլ ամայացել էր, եւ այս ընդհանուր վերածնութեան ժամանակ վերակենդանանում։ Տփխիսեցի եղբայրներ Զիթաղեանները ԺԷ․րդ դարու կիսում նորոգում են անապատի երկու գլխաւոր եկեղեցիները՝ Ս․ Առաքելոցը եւ սուրբ Աստուածածինը իրենց հաշւով եւ եկեղեցական զգեստներ նուիրում։ ԺԸ․ դարում նորոգւում է կրկին Ս․ Աստուածածնի եկեղեցին, նորոգւում է նաեւ կղզու միւս եկեղեցին Ս․ Կարապետը։

Անապատն ընդարձակւում է եւ հնարաւորութիւն տալիս միաբաններ պահելու, մանրամասնութիւններ տե՛ս Շահխաթ․ Բ․ հտր․ եր․ 214—227 եւ Սմբատեան «Գեղարքունիք» եր․ 115։ Աշակերտներ էր տալիս, որոնք լուսաւորում էին ժողովրդին մի կողմից իրենց ճգնաւորական, կրօնաւորական

կեանքով, մեր կողմից գրով եւ գրականու-թեամբ։

Ուշագրաւ այն է որ անապատներում մշակւում է այն կենցաղը ժամատեղերի, սեղանատեղերի, զգեստների եւ միայնա-կեցութեան եւ կրօնաւորական ժուժկալու-թեան, որ կային Ղփթիների անապատնե-րում։ Մովսէս կաթողիկոսը, վարդապետ եղած ժամանակ երբ գնում է Երուսաղէմ, այն տեղից էլ Եգիպտոս շրջագայում է Ղփթիների անապատները եւ վանքերը, ծա-նօթանում նրանց կենցաղի, ժամակարգու-թեան հետ եւ մեծ անապատի հաստատու-թեան ժամանակ օգտագործում քաղած տե-ղեկութիւնները (Ա. Դաւրիժեցի, էջ 285)։

ԺԷ-րդ դարու վերածնութեան առանձ-նայատուկ կողմն այն է որ վանականները ճգնաւորական կենցաղի խստութիւնները կրե-լով չէ միայն, որ հայ աշխարհը լուսաւորել աշխատում էին, այլ եւ յատկապէս արտա-քին գիտութիւնները սովորելով, այն է օտա-րազգի հեղինակների գրուածներ կարդալով, թարգմանելով եւ նրանց հետեւողութեամբ նորերը կազմելով։

Փիլիսոփայական գիտութիւնը՝ տրա-մաբանութիւն, քերականութիւն, տոմարա-գիտութիւն յատկապէս ուշադրութեան են առնում եւ հայ միտքը ընդլայնում, խորա-նում է իր մէջ առնելով եւրոպական գի-տութեան առաւելները։ Հայ կրօնաւորները

են լինում այսպիսով եւրոպական նոր հոսանքի ջատագովները, կոսմոպոլիտները, որոնք տարիներ շարունակ ինքնաշխատությամբ պարապում են, հայ գրականությունը ճոխացնում: Քրիստոնէական բարոյականության այս խստապահանջ հետեւողները աշխարհիկ կենցաղի փափկություններից հեռանալով հանդերձ անդրադառնում համեստ կրոնաւորի ապրուստ ունենալով, հոգու ազնուացման իդեալական ուղին բռնելով երբեք չեն թողնում աշխարհին գիտությունների փիլիսոփայութեան այլ եւ այլ ճիւղերի ծանոթանալուց, ամփոփելուց: Քրիստոնէական կրոնը երբեք նրանց արգելք չի դնում գիտութեան հետեւել ու իրենց աշխարհայեացքները ընդլայնել:

Չի կարելի պատկառանքով չհարգել այդպիսի գիտութեան հետեւողների նախահօր Բաղէշի Ամրդօլու վանքի Բարսեղ վարդապետի այդ ուղղութեամբ աշխատանքը, որ «Անդադար եւ անձանձիր արթնութեամբ յար հանապազ կացեալ ի դուռն իմաստից գիտութեան բաղխէր դրայց եւ զցերէկ աղօթիւք եւ ընթերցմամբ» (Դուր. էջ 398): Սա սկսում է «Գիրք տաղմանցը» կարդալ մինչեւ վերջը, նորից է սկսում կարդալ երրորդ, չորրորդ եւ այլ անգամներ մինչեւ «վերահասու եղեւ, որ այլոց եւս կարէր ուսուցանել» (էջ 392):

Կրօնաւորի կամքի ուժը այս դէպքում



յաղթող է հանդիսանում ու հետզհետէ ա-նապատներում սկսում են սովորել՝ «Նախ զքերականութիւն . . . զկնի նորա Սահ-մանքն սկսան եւ ապա զՊորփիւրն, զՍտորո-գութիւնն» եւն եւն։

Այս գիտութիւնները ծաղկել են նաեւ Սեւանում, որի դպրոցարանում ցայսօր կան մնացած նման երկեր եւ աշխատութիւններ։

## Է.

Անտարակոյս հոգեկան ուժեղ պայքարումնե-րի վայրն է եւ պէտք է չեշտել այն, որ փի-լիսոփայական ներքին ուժեղ պայքարումներ, հոգեկան որոնումներ ունեցող անհատները եւս անապատ են քաշուել եւ հանճարեղ ստեղծագործութիւններ արտադրել։

Ճառաբանական հատուածներ են եղել եւ կան այժմ էլ, որ կեանքի մէջ իմաստ որո-նողներին, իմաստ եւ նպատակ դնել ցանկա-ցողներին հարկադրում են միայնութեան, առանձնութեան մէջ լինել, դրսի շրջապա-տի կեանքը նրանց այնքան ապաւորութիւն-ներ ու որոճալու նիւթեր է տալիս, որ մտքի մէջ այդ ամէնը տարրալուծել, դասաւորել եւ արժէքաւորել չեն կարողանում, ակա-մայից մղւում են միայնութեան։ Եւ ո՞ր տեղ աւելի յարմար է հոգու ներքին ցնցում-ները ապրել, եթէ ոչ միայնութեան մէջ։

Հարկաւ նման պահանջներով անհատա-կանների թիւը շատ քիչ է եղել, դոյա-

թիւն ունեցող թուի շատ քիչ տոկոսն է կազմել, սակայն դրանով անապատի արժէքը չի նսեմանում, որովհետեւ քանակով չէ որ պիտի գնահատուի, այլ որակով։

Գրիգոր Նարեկացին, այդ աստուածախօս միստիկը ու որոնումների դժուարին ուղիով շարունակ առաջ գնացող անապատականութեան լաւագոյն ապացոյցն է դիտողութեան անապատականի իր բոլոր լաւ կողմերով, նա լրումն է անապատի նշանակութեան եւ նրա «Ողբերգութեան մատեանը» չի կորցրել եւ չի կորցնի իր այն արժէքը, որ նա ունեցել է Աստուծոյ ու մարդու փոխյարաբերութիւնը որոնելու ծանրակշիռ փիլիսոփայական հարցի համար։

Անապատը լինելով նաեւ համայնակեցութեան նախատիպ, բնականաբար ունէր իր որոշ կարգն ու կանոնը, որի մասին բաւական մանրամասն տեղեկութիւններ տալիս է Դաւրիժեցին (էջ 256—257)։

Սեւանը ժամանակի աչքի ընկնող անապատներից էր եւ նոյն կարգն ու կանոնն ունէր, որը դեռ եւս իշխում էր ԺԹ. դարու սկզբում, ինչպէս այդ երեւում է Շահխաթունեանի տեղեկութիւններից (Բ. հատ. էջ 229) եւ Կիւմիւշխանեցու Սեւանայ պատմութիւնից (էջ 50—51[1]։

[1] Տես նաեւ Յուսիկ եպ.ի «Անապատականներ եւ վանականութիւն», յաւելուած Սեւանի մասին, էջ 140—153։

Ուստի եւ Դաւրիժեցու տեղեկութիւնները լրիւ մէջ բերելն անհրաժեշտ է Սեւանի անապատի ներքին կենցաղը հասկանալու համար։

«Սահմանեցին՝ թէ պարտ է անապատաւորաց միայն կալ՝ եւ մնալ ի խցի. եւ պահել զմիտս եւ զխորհուրդս սուրբս ամենայն անմարմին մտածութեանց հոգեկանաց եւ մարմնականաց, եւ թողուլ զկամս իւր եւ լինել հնազանդ եւ կատարող կամաց առաջնորդին, եւ ոչ լինել ամենայն ստացուած առանձին, այլ ամենայն ինչ հասարակաց լինել. եւ առաջնորդն հոգասցէ զամենայն եղբարց պէտսն, եւ բաշխեսցէ ում եւ որպիսոյացի. եւ ինչ ոչ ունել ի խցի՝ եւ կամ ուտել. եւ հանապազօր ի տաճարին պահօք անցուցանել, բաց ի շաբաթէ եւ ի կիւրակէէ եւ ի տէրունական տօնից։ Ի պասս հրամայեալք ի գինւոյ եւ ի մսոյ. եւ յամենայն ատուր յայգն եւ յերեկոյն խոստովանել անխափան զյանցուածս եւ զմտածութիւնս աւուրն. եւ յամենայն շաբաթ օր եւ ի կիւրակէ օր, եւ ի տէրունական աւուրն զգիշերն պաշտամամբ անցուցանել մինչեւ ցառաւօտն, եւ ի սոյն աւուրս անխափան մատուցանել պատարագ. եւ հասարակ ամենեքեան մեծ եւ փոքր, ի միասին գալ ի մարմնաւորաց գործոց կոչնակին, եւ ի սեղանն մարմնաւոր, եւ ի տեղի աղօթից, եւ իւրաքանչիւրոց առանձին զնել զմարմնաւոր կերակուրն, եւ

ի մեծէ մինչեւ ցփոքունս միաչափ այնպէս եւ զբաժանեալն մրգաց՝ միաչափ։

Այլ եւ զորպիսութիւն եւ զձեւ զգեստուցն գոյն ի զրոց, զբուսիթայն, որ է գլխոյ թագին, եւ զծիրանակուսին, եւ զքեմն, եւ զցպախն, որ է մազեղէնն, ի ներքոյ զգեստուցն ի վերայ մերկ մարմնոյն, եւ հասարակ ամենեցուն զգեստն բոլորակ առակեղէն լինի՝ եւ ոչ բամբակեղէն. եւ զառակեղէն շապիկն երկայն պճղնաւոր ասնեղ մինչ ի յատն. եւ զօտի մաշկեղէն։ Եւ սահմանեցին ամենեցուն թէ իւրաքանչիւր որ իւրովք զգեստուքն շրջեսցի, եթէ միայնակեաց իցէ՝ բուսիթայիւն եւ քառակուսովն. եթէ երէց իցէ՝ փիլոնաւն, թէ աբեղայ իցէ՝ փիլոնաւն եւ վեղարաւն։ Այս կրօնաւորական զգեստ ամենեւին անհնար լեալ էր, եւ այժմ ասրագածին, բաց վեղար եւ փիլոն թէպէտ գոյր, այլ միայն ի ժամ աղօթիցն զգենուին, եւ զնոսա արձակման ժամուն ի բաց եդեալ յնլանց, եւ իբրեւ զաշխարհականս շրջէին։

Այլ եւ զկարգ ժամատեղացն սահմանեցին, զառաջին ժամ գիշերոյն պաշտամամբք կատարել ի աէրունի աւուրն եղանակաւ «յիշեցուք» այլովքն. եւ երկու կանոն սաղմոս եւ ի վերջին կանոնագլուխ ձայնիւ. եւ հանգստեան շարական եւ աւետարան, պաշտօն վասն ննջեցելոց. եւ օրհնութիւն բազ խորհրդոյ աւուրն, եւ ի վերոյ՝ քաղուածք շարականաց. եւ Թագաւորք, եւ այլքուք

ձայնիւ. նոյին զկնի ընթեռնուլ զյայտմաւուրս, եւ ի վերայ նորա շարականն ըստ պատշաճի ժամին, որ ընթերցաւ. եւ զկնի երկու կանոն եւս սաղմոս. զհետ նորին հարցն իւրովք սարօքն. եւ զարեւելից ժամն, իւրով կանոնաւ սաղմոսացն. եւ զկնի առաւօտու ժամուն, եւ երեկոյի ժամուն, յետ արձակակերոյն՝ զիրս խրատականս ընթեռնուլ յամենայն աւուր: Եւ զերրորդ ժամ ցերեկին, եւ զվեցերորդ ժամն, եւ զիններորդ ժամն, իւրեանց նշանակեալ սաղմոսացն, զատ եւ որիշ ի միմեանց յիւրաքանչիւր նշանակեալ ժամու աւէքն. եւ զկնի զպատարագն սուրբ մատուցանէքն. եւ զարարողութիւն պատարագին՝ զոյգօք եւ սարկաւագօք, եւ իւրաքանչիւր որ իւրովք նշանակեալ զգեստուքն. ամենեքեան խոստովանեալ եւ ապա զգեստաւորեալ, ահիւ եւ դողութեամբ կալ առաջի պատարագին, եւ մաքուր եւ սրտառուչ աղօթել եւ զխառել ի սրտի՝ թէ զինչ աղօթեն. եւ ի սկզբանէ պատարագին մինչեւ ի վախճան ցընթերցումն, «Իբրեւ ճաշեցին» աւետարանին, անդադար եւ անմիջոց հեղուին արտասուս ի մէջ եկեղեցւոյն իբրեւ զողխումն աղբեր: Եւ զկնի պատարագին, ոչ վաղվաղակի առնուին կերակուր, այլ յելանելն յեկեղեցւոյն լռելեայն ընթանային իւրաքանչիւր որ ի խուցն իւր, զի զընկալեալ շնորհսն եւ զլուսաւորութիւն մտացն՝ զոր ընկալան ի սուրբ պատարագէն, մի գուցէ, փարատեսցի ի մը-

տաց նոցա, եւ անդ եւս ի խցին ժամ մի առանձին աղօթիւք անցուցանէին մինչեւ հանդարտէր բարբառումն սրտից նոցա. եւ յորժամ հարկանէին զկոչնակ սեղանոյն՝ ապա ամենեքեան ժողովէին ի սեղանատունն՝ եւ միահաղոյն նստէին ի սեղանն՝ եւ ուտէին լռելեայն, եւ յորն միանգամ ուտէին կերակուր՝ ի բոլոր տարի. եւ յուտելն զկերակուրն սահմանեցին գիրս ընթեռնուլ, զի որպէս քիմք զհամս ճաշակեն, այնպէս եւ միտք զբանս Աստուծոյ քննեսցեն:

Արդ այս յայտնի կարգ եւ սահմանք նոցա, զոր վերոյասացեալ վարդապետքն սահմանեցին երկոքին արամբքս, իսկ զծածուկ առաքինութիւնս նոցա՝ զոր ունէին, նա միայն գիտէ, որ քննէ զսիրտս եւ զերիկամունս որդւոց մարդկան: Քանզի ամենեքեան զարդարեալք էին զանազան առաքինութեամբք, ոմանք անանկացութեամբ, ոմանք պահոց պնդութեամբ, ոմանք արթնակացութեամբ, ոմանք արտասուահեղութեամբ, ոմանք լռակեցութեամբ, ոմանք հիւանդաց սպասաւորութեամբ, ոմանք այլ կերպիւ, մինչ զի ամենեքեան արժանացեալք էին շնորհաց սրբոյ հոգւոյն, առ որ հաճոյ լինէր սրբանուէր աղօթք նոցա»:

Այս տեղեկութիւնից երեւում է թէ օրւայ մէկ մասը ժամերգութեան էր նուիրում անապատականը, բայց եւ ունէր իր յատուկ առաքինութիւնը, զ. օ. չքնել, չարունակ

պետ պահել, չարունակ կանգնած լինել, որոնք մարմնական կարողութիւններից վեր են եւ հոգու ոյժը, պարզապէս կամքը միայն կարող են յաղթահարել այդ ամէնուն։

Այս տեսակէտից անապատականները յիրաւի զարմանալի հոգեկան ոյժ են ունեցել, եղել են հոգեկան հետաքրքիր ընդունակութիւնների տէր, ի հարկէ ոչ բոլորը եւ կարողացել են այսպիսով ազդել ժողովրդի վրայ։ Անապատն այս տեսակէտից բարոյական դաստիարակման խոշոր նշանակութիւն է ունեցել ժողովրդի վրայ եւ հեռու է պահել զեղծումներից։ Հասարակական դաստիարակման խնդրում անապատի դերը ուշագրաւ է, քանի որ անապատի այցելու ուխտաւոր ժողովուրդը ճգնաւորի կենցաղի մասին լսելով, կամ աչքով տեսնելով, մի կողմից զատուում էր իր հաճոյքներից եւ միւս կողմից հասարակական կարեկցութեան, բարեգործութեան էր հետեւում իր հոգու փրկութեանը հասնելու։ Անապատը մեր ժողովուրդի բարոյական դաստիարակման խոշոր ազդակն է եղել։

## ՄԱՍՆ ԵՐԿՐՈՐԴ

### Ա.

*Հայ վանքի ու կրօնաւորի ունեցած դերը Հայ ժողովրդի լուսաւորութեան խնդրում յատկանշական չափանիշ։ ընդունելով ԺԹ. դարում ռուսահայ հատուածի պատմութեան մէջ տեսնում ենք, որ մինչեւ այդ դարու սկիզբը եղած երկուսի փոխյարաբերութիւնը այլ եւս գոյութիւն չունի։*

*ԺԷ. եւ ԺԸ. դարում Հայ կեանքին գոյն տուողը վանքն ու կրօնաւորն է դեռ. Հասարակական զարգացման դերիշխող տարրը կրօնաւորն է խոր գրական վաստակներով՝ իր վերածնութեան բուռն աշխատանքով։ Ռուսահայ այժմեան հատուածի այն ժամանակուայ բռնած տարածութեամբ անցնողը՝ Հայ մշակոյթի աշխատանքը վանքերում եւ անապատներում էր տեսնում, Հայ կրօնաւորն էր ժողովրդին ուղի ցոյց տուողը դէպի ինքնուրոյն ապագային ամփոփումը։*

*Անցէք ԺԹ. դարու վերջերում ռուսահայ հատուածով, յատկապէս ԺԷ.—ԺԸ. դարերի վերածնութեան կենդրոն Սիւնեաց աշխարհով՝ Գեղարքունիքով եւ կը տեսնէք որ այդ օջախները հանգել են եւ նրանցից մէկն է միայն դեռ առկայծում իւր պակասած ճրագի նման, — այդ Սեւանն է։*

*Հայ կեանքի — ռուսահայ հատուածի զարգացման յատկանիշն է այդ — Սեւանը,*

միակ մնացորդը կրօնական զարգացման այն մեծ շարժման, որ այնքան թափով սկսուեց ԺԷ. դարում եւ շարունակուեց շուրջ երկու դար:

Եթէ առաջ հայ կրօնաւորն էր հոգեւոր դաստիարակը ժողովրդի ու նրան գրի սէրն ու աղխատակը հասկացնողը, եթէ կրօնաւորը՝ անհատապէս հոգեւորականն էր իմաստութեան աղբիւրը, որին դիմում էին հայ իշխանաւորն ու ռամիկը, այս ԺԹ. դարում առաւ աւանդը ռուսահայ կեանքում այն աշխարհականն էր, որ առաջ աշակերտ էր, այժմ ուսուցիչ էր դարձել: Դերերը գլխի վայր են դառնում ԺԹ. դարում կրօնաւորնի եւ աշխարհականի փոխյարաբերութիւնների տեսակէտից եւ վանքն ու կրօնաւորը այժմ դառնում են ուսանող փոխանակ ուսուցչի: Արտաքուստ ռուսահայ եկեղեցին բարեզարդւում, կարգ ու կանոնի տակ է մտնում եւ կարծես աւելի ուժ է ստանում: Եղել են ու կան այժմ էլ պատմաբաններ, մատենագիրներ, որոնք ռուս իշխանութեան հայ եկեղեցու նկատմամբ ցոյց տուած թեւարկութեանը, արտաքին փայլի էժանագին փառաւորութիւնը շոյող ռուսականական պատիւների մէջ տեսել են հայ եկեղեցու հզօրացումը, կանոնաւորումը:

Իրաւի երբ համեմատենք Հայոց հայրապետների վիճակը պարսից ու օսմանցւոց տիրապետութեան ժամանակ Ռուսաց

տիրապետութեան ժամանակի հետ, կը ամենէնը մեծ տարբերութիւն որ յօդուածի վերջին շրջանին է խօսուած եւ ի վնաս մահմետական տիրապետութեան:

Համեմատեցէք Մելիքսէթ կաթողիկոսին բանտ ձգելու, ապտակով իր մէկը պահելով իրեն ուտեցնելու, Յակոբ կաթողիկոսի սուլթանի ոտքերը փողոցում համբուրելու վիճակը[2] մեր ԺԹ. դարու ռուսահայ կաթողիկոսներուն Ռուսաց կայսեր ներկայանալու պաշտօնական անթեւեթեան արարողութեան հետ: Կարդացէք այդ առթիւ եղած նկարագրութիւնները «Արարատում» եւ համեմատեցէք ու կը տեսնէք որ տարբերութիւնը խիստ մեծ է: Նախկին ատյայի վիճակն ունեցող Կաթողիկոսը՝ այժմ իշխանաց իշխանի արտաքին պատիւն ունի. շրջապատուած է շքով ու արդուզարդով, որ աչքով ամէն ինչը գնահատող, ստրկութեան գերի ժողովրդի համար մեծ արժէք ունի:

Սակայն այդ փայլը, պաշտօնական պճրանքն ու անթեւեթանքը, ստրկական «պատրաստ եմ ծառայելու», «լսում եմ!» պատիւները հայ եկեղեցու բովանդակութեան ուժասպառ լինելու, հետզհետէ բարոյական ուժերից ցամաքելու միջոցներ են եղել:

---

[2] Առ. Դաւրիժ., էջ 202—230, Զաքարիա Սարկ. Բ, էջ 72—78:

տարրեր է դէպի հայ մշակոյթը, մինչեւ Թէկուզ ԺԷ—ԺԸ. դարերում, էլ չեմ ասում Ի.—Ժ. դարերում հայ մշակոյթը հովանաւորութիւն է գտել հայ ազնուական դասի կողմից:

Այսպիսով մի կողմից ռուսահայ հասուած ստեղծուիլը, ռուսաց տիրապետութեան ձեռք առած միջոցները, միւս կողմից մեր առհասարակ աշխարհիկանայու համար գործ դրած միջոցները, երրորդ կողմից տարածման եւ տարածայու համար առաջ եկած հրապոյրները, ռուսահայ աստուածի եկեղեցիները են ածում պճնուած ամբարի, առանց կենդանի ոգու, վանքերը հետզհետէ մարում են, անապատները փլատակի վերածում եւ դրանց մէջ մնում է միակ վերջին վկան Գեղամայ ծիծղուն ծովակի վրայ Թառած Սեւանայ երբեմնի աւամնատենէ՛, այժմ հանդչող անապատը. կարծես կենդանի ապացոյց — օրինակը մնայու ԺԷ—ից մինչեւ ԺԹ. դարու վերջը կատարուած պատմական մեծ յեղաշրջման:

Բ.

Պարսից տիրապետութեան տակ եղած հայ երկիրը ԺԷ—ԺԸ. դարում հետզհետէ Թուրք-Թաթար տարրով լցւում է եւ Հայաբնակ Արարատը եւ Սիւնիքը բաւականաչափ դատարկւում են հայերից ու նրանց տեղ հիմնւում են Թրքաբնակ գիւղեր:

տակ (այժմ Օրտաքյոյ)[4] ընդ ամէնը 15 գիւղ։

Այս գիւղերի բնակիչների տուրքերով պահւում էր վանքը, սակայն բնակիչների թիւր քիչ էր, ուստի եւ Դանիէլ կաթողիկոսը 1802 թ. Հոկտ. 12ին կոնդակ է տալիս Սեւանայ Սարգիս վարդապետի անունով, որ գնայ ժողովարարութեան Երեւան եւ Վրաստան, Տփխիս, Սեւանայ սուրբ անապատը «շէն եւ հաստատուն» պահելու համար — «թէպէտ ժողովուրդքն հեռացեալ են այժմ յերկրէ եւ ի բնակութենէ իւրեանց, այլ յանապատն կայ շինութիւն եւ բնակութիւն միաբանից. մի՞ թէ ժողովուրդքն հեռանալով ի տեղւոյէ իւրեանց, Հողոյ տունն եւս հեռանայ եւ անհետ լինի. մարմինն հեռաւորութիւն ընդունի, այլ եւ ոչ հոգին...[5]»։

Սեւանը թեմ էր, ունէր իր առաջնորդը, որը թէեւ վարդապետ էր եւ միաժամանակ վանահայր, բայց ըստ Եփրեմ կաթողիկոսի 1828 թ. Հոկտ. 26 եւ Յովհաննէս Ը. կաթողիկոսի 1832 թ. Նոյ. 2ի հրամանագրերի «...հրաման ունի... զամենայն առաջնորդական պարտաւորութիւնս եւ զգործս պատկանեալս թեմին կատարել ամենայն բարեկարգութեամբ... եւ տանել ի ձէնջ յանուն Աստուածոյ զամե-

[4] Գեղարքունի, 143։
[5] Գեղարքունի, 142։

նոյն հոգեւորական սահմանեալ նուէրս եւ պտուղս ձեր, որք են պտղի, հողերամբին, կողոպուտ, քահանայութեան, եւ այլք նուիրանի սովորականք...»[6]:

Հայ վանքը, անապատը պահողը եղել է ժողովուրդը իր տուրքով, այդպէս էլ պահում էր Սեւանը, իբր մի փոքրիկ թեմ. մինչեւ 1836 թիւը, երբ ռուս իշխանութիւնը տալիս է հայ եկեղեցու կառավարութեան համար «Պոլոժէնիա»ն, որով Ռուսահայոց ժողովուրդը բաժանւում է վեց թեմի թեմական իշխանութիւններին, կենդրոնները վանքերից, անապատներից տեղափոխելով քաղաքական բաշխումով գծուած նահանգի կամ շրջանի կենդրոնական քաղաքը: Հոգեւոր կենդրոնն անապատից քաղաք է տեղափոխւում. այս եկեղեցու աշխարհականացումն էր:

Սեւանայ անապատն ունէր եւ իր սեփականութիւնները, գիւղերը, խանութները, ջրաղացները, սակայն եկամուտները շատ քիչ էին: Դժբախտաբար Սեւանայ մենաստանի գիւանը առհասարակ անկանոն ու թերի է, մանաւանդ մինչեւ 50ական թուականները. ըստ Մենաստանի, յատկապէս նրա անտեսական գրութեան մասին որոշ տեղեկութիւններ հնար չեղաւ քաղել[7]: 1832 թուի եկամուտն է եղել 163

[6] Գեղարքունիք, 144—145:

[7] Սեւան անապատի գիւանը, 1916 թ-ին կարգի է բերել Սեւանի միաբան, այժմ հանգուցեալ Եղնիկ

թուման, 2600 գրան, 1833ին 196 թուման, 5700 գրան, 1834ին 77 թուման, 1350 գրան, 1835ին 103 թուման, 1200 գրան: Եկամուտների տարբերութիւնը առաջ գալիս է նրանից, որ նուէրները, խաչահամբոյրները պատահական բնոյթ ունին եւ տարբեր են լինում նայելով ուխտաւորների թուին, տարուայ բերքին, ժողովրդի կացութեանը:

Դրամները դեռ պարսկական կիրառութեամբ են գանձւում, թէեւ ռուսաց տիրապետութիւնը սկսւում էր արդէն չորս տարի առաջ:

1828 թ.ին ռուս-պարսկական պատերազմից յետոյ Գեղարքունիքը հայաշատ է դառնում շնորհիւ Ալաշկերտից, Հին Բայազիտից եկած գաղթականների, որոնք 1830 թուին բնակութիւն են հաստատում այժմեան Ն. Բայազիտում եւ շրջակայքում: Գիւղերի բնակիչների թիւը շատանալով աւելանում է եւ Սեւանայ մենաստանի եկամուտը, քանի որ մի կողմից ուխտաւորներն են շատանում, միւս կողմից հնաւանդ սովորութեամբ Ս. Նշանը մենաստանի նուիրակ վարդապետը տանում է, գիւղացիների ցանկութեամբ, գիւղերը շրջեցնելու եւ բնութեան պատահարների, տարափո-

Վ., որը ծայրէ ի ծայր աչքէ եմ անցրել 1918—1920 թ.ին, որից եւ քաղում եմ անտպագիր վերաբերեալ տեղեկութիւնները:

խիկ հիւանդութիւնների առաջն առնելու, եւ համարում է նուէրներ յօգուտ մենաստանի:

Ով տեսել է, թէկուզ Ի. դարու սկըզբում, թէ ի՛նչ հանդիսով, ի՛նչ ջերմ հաւատով, Գեղարքունեաց եւ Ծաղկաձորի շրջանի գիւղացիք գալիս են մենաստանը, վանահայրը խնդրում, Ս. Նշանը իրենց գիւղը տանելու, ի՛նչպէս մենաստանից թափօրով, շարականով, մենաստանի հնչիւն զանգերի զօղանջիւնի տակ, լալով, արցունքով ճանապարհ են դնում Ս. Նշանը դէպի գեղեր, ի՛նչպէս գիւղացիք խմբերով դիմաւորում են երբ Ս. Նշանը գիւղի ծայրն է հասնում, հիւանդները անկողիններից իջնում են ու գիշերային զգեստներով դիմաւորում, կին, երեխայ, ծեր, մանուկ լա-լահառաչ մի՛ակ օգնութիւն իրենց ցաւի Ս. Նշանից աղաչելով դիմաւորում են նրան — նա կը տեսնէ, որ մենաստանը շրջանի ժողովրդի համար խիստ կարեւոր դեր է կատարել, մանաւանդ ԺԹ. դարու առաջին կիսում:

Գիւղացին իր անտեսութեան որոշ մասը սիրով նուիրում է մենաստանին, քանի որ նրա կրօնական-բարոյական կեանքում Գեղարքունեաց այդ չքնաղ անապատը կենդրոնական տեղ էր բռնում:

Կրօնական ըմբռնումը, կեանքի դժուարութիւնների յաղթահարելու ոյժը ներ—

ընչելու, ցուլերի, մշակի մխիթարանքն սատանայու աղբիւր էր գիւղացու համար. Եւ անապատը այդ գերը կատարում էր աւելի խոշոր չափով ԺԹ. դարու սկզբներում, երբ հայ ժողովուրդն իր ամբողջութեամբ կրօնական–եկեղեցական դաստիարակութիւն ունէր:

Հայ ժողովուրդը պատմական ու աշխարհագրական պայմանների շնորհիւ մէկ կամ երբեմն երկու դար ուշ էր ապրում զարգացման այն շրջանը, որ քաղաքակրթական ժողովուրդներն էին ապրում; ԺԹ. դարու սկզբում հայ ժողովուրդը եւրոպական ժողովրդի վերածնութեան սկիզբն էր ապրում. Նոր նոր երկիրը, յատկապէս ռուսահայ հատուածը, սկսել էր փակ տնտեսութիւնից, անտանդորժութիւնից ելնել ու կամաց կամաց անցնել մանր արդիւնաբերութեան շրջանը:

Նահապետական էր կենցաղը, տնտեսութեան ձեւը ԺԹ. դարու առաջին քառորդում: Ամէն ինչ գիւղացին իր տանն էր պատրաստում, իր ընտանիքի ոյժով, որից ներմուծող առեւտրական–արդիւնաբերական շատ քիչ էր տանում: Քաղաքը ռուսահայ հատուածի մէջ մէկ հատ էր — Երեւանը այն էլ ասիական քաղաք, որ մեծ գիւղից քիչ էր տարբերւում: Այսպիսի շրջանում ամէն ինչ անտանդորժական էր լայն մասով, այնպէս, ինչպէս միջին դա-

րում Եփրատայի ժողովրդի մէջ էր։ Եւ ինչպէս վերջինուս ժողովրդի մասուր դարդացման դէպը վանքի, հողեւորականի ձեռքին էր, այնպէս էլ եւ մեղանում էր։

Կարդացէք Խ. Աբովեանի Վէրք Հայաստանին ու կը տեսնէք, որ ԺԹ. դարու սկզբի Այրարատի, ինչպէս եւ Սիւնիքի ժողովուրդը դեռ միջին դարու, թէեւ վերջին շրջանի, կեանքն է ապրում. «Մեծ մարդիքը միրքները սանդրելով, պատու կնանիքը չարսաւը կռնատակներին տակին՝ կամաց կամաց տանից դուրս էլան ու Տէրողորմեայ քաշելով, Հայր մեր ասելով, Հրամարմինքը կամ Համատով խոստովանիմքը քթների տակին փնթփնթացնելով, իրար ողջոյն տալով՝ չատը իր տակը քցելու չորը կամ մորթին ձեռին բռնած, քիթ քթի տուած գնացին ժամ, դուռը պաչեցին, էն փախսին վրայ հասան, որ տէրտէրը դեռ չէր էկել, ժամկոչին տեսցին, որ դանդակը քաշի ու իրանք մի քանի ծունր գնելուց յետոյ, մարդիքը սեղանի առաջին, կամ աների տակին, կնանիքը եղի դատում իրանց համար իրար մօտ չորը փռեցին, չոքեցին, գլուխ գլխի դրին ու սկսեցին դրից անել...[8]»։

Այս էր հայ գիւղացու, կ'ասեմ հայ մարդու, որովհետեւ ռուսահայն այդ

---

[8] Խ. Աբովեան, Վէրք Հայաստանի, Ա. հար., էջ 12—14։

շրջանում գիւղացի էր, քաղաքացի ներկայ մօրով գրեթէ չկար, հոգեւոր ու մտաւոր սնունդի պաշարները:

Նրա անտեսութիւնը փակ անտեսութիւն էր. «Գինին կարասներով շարած, ամբարը հացով լիքը, կթի կովն ու գոմէշները, Փորթ ու ձագը տակներին, գոմում կապած, քեհլան ձին թավլումը, դութանը գոմերը՝ լցած, մառանը եմշով կախանով, տանձ ու խնձորով խլթլթում... կարասներով կաղակ, կճճներով պանիր ու դավուրմայ, աքաչներով զոխ, բոխ, ադարմակոթ, թղղներով եղ ու կարագ, մոթալներով պանիր, ծո՛վ, ի՞նչ տամ»*:

Այս էր նրա անտեսութիւնը եւ նրա հասկացողութիւնը ոչ միայն ԺԹ. դարու առաջին քառորդում, այլ նոյն իսկ 40ական թուերին նոյն դարու, որի նկարագիրը տալիս է անմահ հայրենասէրի աշակերտը Պերճ Պռոշեան իր մի շարք՝ Հացի խնդիր, Կռուածաղիկ, Սօս եւ Վարդիթեր աշխատութիւններում:

Նոյն դրութիւնն ունէր համարեա՝ Գեղարքունեաց ժողովուրդը դեռ 70ական թուերին եւս. քանի որ այս գաւառը իւր աշխարհագրական պայմաններով շատ էր կտրած քաղաքակրթական կենդրոններից. հաղորդակցութեան դիւրին միջոցներ չըկային. այս շրջանի ժողովուրդը դանդաղ է

* Նոյն, էջ 27—28:

առաջ գնում զարգացման ուղիով, մինչ գրեթէ կէս դար եւ աւելի յետ մնալով Հայաստանի Երեւանի շրջանից: Էլ չեմ ասում Տփխիսի ու Բաքուի հայ ժողովրդից: Իր երկրի սրբավայր Սեւանի նման, սա էլ կղզիացած, կտրուած է աշխարհից եւ մի անապատ է մտքի զարգացման տեսակէտից ռուսահայ հատուածում:

Համեմատեցէք Սարգիս Փիլոյեանի–նոր Բայազիդցու (որը 1895 թ. Սեւանի միաբան դարձաւ ու վանահայր եւ մնաց այդ պաշտօնում մինչեւ 1912 թ.) «Կորած մարգարիտ» վէպիկի նկարագրութեան հետ Խ. Աբովեանի նկարագրութիւնը եւ կը տեսնէք, որ 50 տարի յետոյ էլ Գեղարքունեաց շրջանի ժողովուրդն այն մտաւոր–տնտեսական վիճակն ունէր, ինչ որ կար ԺԹ. դարու առաջին քառորդում Երեւանի եւ շրջապատի ժողովրդի մէջ: Նոյն խունկ ու մոմի, նոյն տէր ողորմեայի, Ս. Նշանի ուխտ գնալով ցաւից ազատելու համար ճակատի ակիքը կարելու եւ նուիրելու, կուլտուրան է իշխողը: Կրօնական–վանական զառանցականութեան կնիքն է, որը Սեւանայ անապատի շնորհիւ դեռ պահւում էր ժողովրդի մէջ:

Այս ազդեցութիւնը, այս զառանցականութիւնը կարող էր տալ Սեւանայ անապատը, քանի որ ժամանակի տնտեսական մտաւորական ըմբռնումը հայ ժողովրդի

մէջ իր ստանդական կողմից չէր դուրս եկել։

Եւ յիրաւի ԺԹ. դարու առաջի քառորդում եւ մինչեւ 30ական թուականները Սեւանը ինքն էլ փակ անտեսութիւն ունէր. նա էլ մի օջախ էր, իր վարուցանով, կով ու ոչխար պահելով, նա հայ նահապետական մի մեծ ընտանիք էր, որի նահապետը վանահայրն էր։ Անապատական կեանքը մարելէ տխուր, առկայծող շրջանն էր ապրում։ Նրա մէջ այս շրջանում չկար այլ եւս ԺԷ—ԺԸ. դարու կենդանի ուսուցման, գրագիտութեան ոգին, բայց կար անհատական առաքինութեան ոգի. ճգնազգեացների կեանք, որը սակայն միաբանութեան ընդհանուր ոգին ու գոյնը չէր, ինչպէս առաջ էր, այլ այս ու այն անհատ մենակեցի, ճգնաւորի, որը եւ իբր առկայծող պատրոյգ աղօտ լոյս էր սփռում մարող անապատի խաւարում։ Հասարակական կենցաղի զարգացման հետեւում էր անապատը. հասարակական կեանքը ելնում էր փակ անտեսութիւնից եւ սկսում քաղաքային անտեսութիւնը. մասամբ շարժումը թէեւ դեռ հոգեւորականի հսկողութեան տակ, աշխարհիկ տարրին էր անցնում. Անապատն էլ անապատինը թողնելով վանքի էր մեռանում։

Այդ շրջանի Սեւանայ մենաստանի կենցաղն են նկարագրում անապատ եկած, այն-

ահեղ ապրած երկու հոգեւորականներ՝ Զաքարիա Եպ. Գուլասպեան – Բէհրուզեան, որը Երեւանի առաջնորդ էր 1825 թ. եւ ապա Մանուկ Վ. Կիւմուշխանցի, որը 1828—1830 թ. էջմիածնի Սինոդի կողմից գալիս է Սեւան վանքը կանոնաւորելու։

Կիւմուշխանցի նկարագրելով 30 ական թուականների Սեւանայ անապատի միաբաններին, որոնք թւում 20 են հաշւում, ամէն մէկին տալիս է կրօնաւորի վայելող մի ածական. օր. մէկն է «աղաւնաբարոյ, հլու եւ հպատակ նախադասի, արի, աղօթասէր եւ ընթերցասէր». միւսը «քաղցրատեսիլ, բարեհամբոյր, ճգնասէր... ի մարդկային կարգաւորանաց ակարագոյն, բայց հոգւոյ եռանդիւն արի, դդաստ եւ սրբասէր». մի երրորդը «այր համեստ, աղօթասէր, ընթերցող, ծանօթ քերականութեան, ճարտասանութեան եւ թուաբանութեան, ժամասաց, անդադար սաղմոսերգու». մի չորրորդը (Կարապետ մահտեսի կոյր) «իմանալի լուսով զարդարեալ բազում աստուածային մատեամբք, զսաղմոսն բոլոր եւ զժամերգութիւնն շարականօք անգիր իւր անսխալ բերան մշտամռմնջելով առ Աստուած ... [10]»։

Այս աստուածային վարքն էր իշխում ընդհանրապէս միաբանութեան մէջ. բայց

[10] Կիւմուշխանցի, էր. 87—90։

եւ կային ճգնազգեաց անձինք, որոնք առատել եւ խստակրօն էին: Այսպիսիներից էր Մելքոն ճգնաւորը, որը 1851 թուին է վախճանուել եւ թաղուել մենաստանում: Սա «վարէր զճգնաւորական կեանս զամենայն ժամանակս կենաց պահելով եւ ճաշակելով պշրաբեկ հաց եւ ջուր ... նաեւ զցայգ եւ զցերեկ աստուել պարապէր ի մշակական աշխատութիւնս [11]»: Նոյնպիսի սրբակրօն ճգնաւորներ են եղել նաեւ Ռափայէլ, Մխիթար եւ Մակար վարդապետները, որոնց մասին Կիւմուշխանցին խօսում է հիացմունքով, որովհետեւ դրանք «սրբութեամբ հեզութեամբ եւ իմաստութեամբ փայլէին»: Դրանցից Ռափայէլ Վ.-ը իւր ամբողջ կեանքում միայն հացով ու ջրով է բաւականացել, օրական հազար ծունր է դրել. միւսը՝ Մխիթար Վ.-ը գրքեր է ձեռք բերում եւ արտագրում. Մակար Վ.-ը եղել է «Անապատի զարդը [12]»:

Անապատի անտեսական բոլոր գործերը կատարում են միաբանները՝ հաց թխել, փայտ կտրել, կով կթել, աթոռ պատրաստել, լամպը (նաւթ չկար դեռ եւս) վառել, մի խօսքով ո՛չ մի ծառայող դրսի մարդ չկար: Մանուկ Վ. Կիւմուշխանցին միայն փոխում է այդ կարգը. վարձելով չորս աշխարհիկ նաւաստիներ, ինքն ասում է, որ

[11] Կիւմուշխանցի, եր. 44:

[12] Մանրամասնութիւնները տես Կիւմուշխանցի, 71,,72:

վանքի մշակական բոլոր ծառայութիւնները իրենք միաբաններն էին կատարում անխափ, թէ՛ վարդապետները, աբեղաները և թէ՛ մաճառեաները (աշխարհիկ առանց կրօնաւորական աստիճանի միաբաններ [13]): Մենաստանի միաբանութեան կեանքը համապատասխան էր իրենց վարք ու բարքին: Զաքարիա արքեպ. Գուլասպեանի նկարագրութեամբ նրանք բարի, հեզ և խոնարհ էին. եթէ մէկը միւսին վշտացնում էր, ձեռքը համբուրում էր, մեղայ ասում, թողութիւն գտնում:

Օրը միանգամ էին կերակուր ուտում, որ լինում էր լոբուց, ոսպից կամ այլ ընդեղէններից պատրաստուած. գրեթէ ողջ տարին պաս էին պահում, բացի շաբաթ և կիրակի օրերից, երբ նաւակատեաց կերակուր են ուտում. կային մարդիկ, որոնք տաք կերակուր չէին ուտում. կային ուրիշները, որ հինգ օր ծոմ էին մնում. իրենց սենեակներում կրակ չէին անում, հագնում էին խարազն (քուրձ) բոլորը, վանահօրից սկսած մինչև մաճառեային: Վանահայրը առանց միաբանների գիտութեան իր համար առանձին կերակուր չէր պատրաստում: Սեփականութիւն չունէին ամէն ինչ հասարակաց էր [14]:

Խցերը հասարակ քարից ու հողից էին

[13] Անդ, եր. 82—83:

[14] Շահխաթունեան, Ստորագր. Բ, 230—232 եր., 216 եր.:

պատրաստուած, չատ նեղ են ու փոքր, որոնց մէջ հազիւ մի մարդու մահճի կարող էր տեղաւորուել. խցերը խոնաւ էին: Ծրագի ծուխն էլ լցւում էր մէջը եւ միաբաններին նեղում: Այս խցերի փոխարէն համեմատաբար նորը շինւում է 1834—1835 թուերին Յովհաննէս Վ.ի վանահայրութեան օրով եկեղեցու արեւմտեան կողմը[15]:

Այժմեան այցելուն էլ կարող է տեսնել կղզու վերին մասում, Առաքելոց եւ Ս. Կարապետ վանքերի առաջ, հին խցերի փլատակները, նեղլիկ լուսանցքով, հազիւ երկու մարդատեղ ունեցող, հասարակ քարաչէն խցերի մնացորդներ եւ աւերակներ. խցեր, որոնք որոշ պատկեր են տալիս ԺԹ. դարու մենակեացների կենցաղի:

Նկատենք եւ այն, որ միաբանները առաջներում ապրել են կղզու վերի մասում՝ գագաթին. այժմեան աւերակ խցերի մօտ. ԺԹ. դարու առաջին քառորդից եկել են կղզու վարի մաս՝ հարթավայրը — այժմեան տեղը:

Անապատականի կենցաղը օրինակելի քրիստոնէական պիտի լինէր. բնականաբար նրանց անմիջական պարտքը—աղօթքը նոյնպէս պիտի լինէր օրինակելի: Մեր վանքերը վարուել են չարունակ Ս. Բարսղի կանոններով, արտաքին կենցաղի տեսակէտից. իսկ ժամակարգութիւնը եղել է տարբեր ա–

15 Անդ:

վօրական ժամանակագրութիւնից, իւրաքան-չիւր վանք ինքը աշխատել է յարմարուելով ընդհանուր կանոնին, իր առանձնայատուկ կազմն էլ ցուցադրել:

Անապատականի կենցաղի մէկ մասը ա-ղօթքին պիտի նուիրուէր. աղօթք, որ ան-միջական-ներքին հոգեկան մաքրութեան, վերածնութեան պիտի նպաստէր և աղօթք, որ լինում էր ժողովրդի, աշխարհի յանցա-ւորների, մեղաւորների, վշտացեալների, կարօտեալների, հիւանդների համար: Դրա-նով պիտի բացատրել և այն, որ ժողո-վուրդը իրենց հոգու փրկութեան համար մենաստանին նուիրում են անտառներ, դաշտ, ցորեն, գարի, այլ և զանազան շէն-քեր, այգի, ջրաղաց, խանութ:

Անապատի աղօթքը միշտ գերադասուել է սովորական աղօթքից. անապատը իւր ար-տակարգ պայմաններով շնորհիւ յատուկ ու-շադրութեան է արժանացել ու սուրբ տեղի համբաւ է ունեցել:

Ահա այդ ժամանակուայ աղօթքի նկա-րագիրը: Գիշերուայ կէսին զանգը հնչում է և բոլորը գալիս են եկեղեցի. նախ ասում են մէկ կանոն սաղմոս, ապա գիշերային ժամերգութիւնը մինչև «Զքէն գոհանամք» աղօթքը, ապա երկու կանոն սաղմոս են ա-սում կանոնագլխի հետ. ապա մնացեալ ժա-մերգութիւնը անընդհատ Արևագալի ժա-մերգութիւնն էլ կից. ապա գնում են իրենց

խցերը առանձնական աղօթք անելու։ Այս տեւում է մօտ 2—2½ ժամ, գիշերուայ ժամի երկուքից մինչեւ 4—4½ը։ Յետոյ գալիս են ճաշու ժամն են տեւում երեք Ողորմեաները, մեծի պահոց քարոզներով եւ աղօթքներով. ապա գնում են ճաշելու. ուր որ միաբաններից մէկը Վարք սրբոցից մի բան է կարդում, միւսները լուռ ճաշում են։ Մի քանի ժամից յետոյ սկսում են Երեկոյեան ժամերգութիւնը, սկսելով «Ի նեղութեան» կանոն սաղմոսից։ Սրանից մի քիչ յետոյ Հանգստեան ժամերգութիւնն են տանում՝ «Ընկեցէ»ն եւ ապա գնում են ննջելու։ Մեծի պահոց օրերին քիչ ժամանակ են մնում դուրսը, օրուայ մեծագոյն մասը անց են կացնում եկեղեցում։ Տարուայ մէջ տասը հսկում են կատարում. ամբողջ գիշերը ժամերգութիւն կատարելով. ապա միւս օրը լինում է պարապ[16]։

Համեմատելով այդ ժամանակուայ ժողովրդի մտաւոր բարոյական աշխարհայեացքը Սեւանի անապատի միաբանների կենցաղի, վարքի, բարքի հետ տեսնում ենք, որ մէկը միւսին համապատասխան է, մէկը միւսին աղբիւրը եւ միմեանց լրացնող։

Կրօնական ոգին իշխում է, ջերմեռանդ բարեպաշտական զգացմունքը գործունէութեան դրդիչն է. աղօթելը նպատակ է. հասարակ անապատականը գրաւիչ է դեռ։

[16] Շահխաթունի, Բ. հատ., 229—230։

Սևանը դրսում դառնում է համապատասխան տրամադրութիւն իր կենցաղի համար․ դուրը իր ձգտմանը, իր ըմբռնածին, ցանկութեանը ներդաշնակող կրօնաւոր է տեսնում Սևանի անապատում։

Այս շրջանի վանահայրերն են, ըստ Մեսրոպ արքեպ. Սմբատեանի. 1. Սարգիս Վ. Ոսկանապատցի 1801 թուից. 2. Ռափայէլ Վ. այր սրբակեաց 1818. 3. Յովհաննէս Վ. Հաջաջուր գիւղից 1819 թ. 4. Մինաս Վ. Ճամթղոանցի 1840 թ. և 5. Յովհաննէս Վ. Անտօնեան 1842[17]: Ըստ Կիւմուշխանցու վանահայրներն եղել են. 1. Գրիգոր Վ. Գանձակեցի 1723—1815. 2. Սարգիս Վ. Սևանցի 1807—1818. 3. Յովհաննէս Վ. Հաջաջուրցի 1818ից[18]: Հաւանական վերջի ցուցակն է։ Սոքա իրենց գործունէութեամբ ու կենցաղով նոյնն են եղել, ինչ որ միւս միաբանները, աչքի ընկնող երևոյթն եղել է այն, որ անտեսութիւնը համեմատաբար աւելի ընդարձակել են և միաբանութեան նոր խցեր շինել[19]: Այս շրջանի վանահայրերը եղել են պատմական Սևանի անապատական աւանդութիւնների վերջին ներկայացուցիչները. որոնցից յետոյ անապատը վանքի կենցաղ է սկսում, պահելով քիչ բան անապատի սովորութիւններից։

17 Գեղարքունի, 134 էջ։
18 Կիւմուշխանցի, 66—70 էջ։
19 Կիւմուշխանցի, 109—111 էջ։

Սեւան սկսում է իր կենցաղի մի այլ շրջան 50ական թուերից։

Գ.

Դարեր շարունակ քաղաքակրթութեան ծառայող Հայ ժողովուրդը պարսկա–տաճկական լծի տակ կարծես ամբողջապէս դադարել էր՝ ինքնական մշակոյթ զարգացնելու աշխատանքից։ Ռուսական տիրապետութեան տակ մտնելուց յետոյ, նրա որոշ հատուածը իր ֆիզիքականի, նիւթականի ապահովութիւնը ձեռք է բերում եւ սկսում թմրացած կուլտուրական աշխատանքը որոշ անհապաղ առաջ տանել։ Կարծես կուլտուրայի ծարաւը նրան մի ոյժ է տալիս տասնամեակներում ձեռք բերելու՝ դարերով անուշադիր թողածը։

1836 թուի Եկեղեցական կարգաւորութիւնը, որ տիրում էր ռուսահայ հատուածին, դառնում է ազգային ինքնուրոյնութեան մի կանոնադրութիւն։ Հայ մտաւորականը աշխատում է այդ զուտ եկեղեցական կանոնադրութեան տալ նաեւ աշխարհիկ ինքնավարութեան գոյն, նրա յօդուածներում փնտրում գտնում է կէտեր, որոնց հիման վրայ որ ազգային լեզուն ու գիրը առանց օտար, տիրող պետութեան միջամտութեան, կարող էր զարգացնել։ Թեմական ու ծխական դպրոցները, որ սկսում են կազմակերպուել՝ այդ թուից դառնում

են ազգային եկեղեցական դպրոցներ: Դպրոցները խալիֆայական, վանքական դըպրութիւնից ելնում են հետզհետէ և ստանում աշխարհիկ դպրոցների նկարագիր, բնականաբար զուտ վանական դպրոցները փակւում են:

Դպրոցներն աւարտող սերունդը դառնում է կորիզը հայ նոր կազմուող մտայինների: ԵԹԷ ԺԹ դարու առաջին քառորդում մտայինները գերազանցապէս հայ հոգեւորականներից էին կազմւում, ապա նոյն դարու կէսից սկսում է առաջ գալ յատուկ հայ աշխարհիկ մտայինների դասը, որոնք իրենց կրթութիւնը աշխարհիկ դպրոցներում էին ստացել:

Աւելացնենք սրանց վրայ և Ռուսաստանի պետական դպրոցներում սովորող հայ երիտասարդութիւնը և տեսնում ենք, որ յընթացս 25—30 տարուայ կազմւում է մտայնութեան մի դաս, որի մէջ աշխարհօրէն և աշխարհը ապրելը, եւրոպական գրականութեան ու գիտութեան հետեւելը գերակշռող տեղն է բռնում:

Հպատակ փոքր ժողովրդին հոգեբանօրէն յատուկ է իրենից ուժեղ ու քաղաքակրթուած ժողովրդի իշխանութեան տակ անցնելուց յետոյ, ամէն կերպ աշխատել նմանուել տիրող ժողովրդին, ընդօրինակել նրանից այն ամէնը, ինչ որ դիւրին է և արտաքին քաղաքակրթութեան վերաբե-

բեալ։ Նիստ ու կացի, զգեստի, լեզուի, յարաբերութիւնների ձեւերը գիտութեամբ նմանողութեան համբաւ ձեռք է բերում ու Հայաստանին տիրողից զատող անախորժ տարբերութիւնը նման դէպքում հեշտութեամբ վերանում է։ Իր գոյութեան ընթացքում Հայաստանեայց վարժ հայ մարդը այդ նոյն հոգեբանութեամբ պիտի հեռանէր, այդ պատմական անհրաժեշտութիւն էր։

Եւ յիրաւի 50ական թուականների հայ մարդը, այլեւս պարսկա-տաճկական կնիքից բաւական ազատագրուել էր. գիւղերում, խուլ անկիւններում դեռ կարելի էր տեսնել այդ դարերի տեւող տիրապետութեան հետքերը խօսքերի, բառերի եւ մի քանի բնանեկան սովորութիւնների մէջ։

Մի կողմից կազմւում է աշխարհիկ մասյինների դաս, որոնց մէջ տոն տուողը լինում են հիւսիսում, Ռուսաստանի բարձրագոյն կրթարաններում եւ Դորպատի գերմանական ոգով գործող համալսարանում սովորողները, միւս կողմից ժողովուրդը արագութեամբ ընդօրինակում է ռուսական կենցաղի ձեւերը, եւ ռուս իշխանութիւնն իր հերթին, իր բազմաթիւ պաշտօնեաներով եւ պետական հիմնարկութիւններով տարածում է իր քաղաքակրթութիւնը եւ ռուսական ազդեցութիւնն ուժեղացնում. ռուսացումը առաջանում է։

Եթէ էջմիածնում կազմւած Սինոդի

անդամներից ոմանք իրենց ազգանուան ռուսական վերջաւորութիւն են տալիս, եթէ Սինոդում գործակալութիւնը ռուսերէն է լինում սկզբի տարիներում, ի՞նչ զարմանք, որ Հայ գիւղացին էլ նոյնն անէր եւ Հայ մայրերը, Հայ քաղաքներին, գիւղից քաղաք գնալով քաղաքաւարի դարձածը, աւելի եւս մեծ չափով դրան հետեւէր։

Այս հոսանքների ազդեցութիւնների հետեւանքն այն է լինում, որ առաջ է գալիս Հայ քաղքենիութեան հոսանքն ընդհանրապէս։ Քաղքենի մտածմունքը, ըմբռնումը, ապրուստը, աշխարհահայեացքը իր անկուլտուր գրութիւնից կուլտուրականին անցնելու մի շրջան է. քանդող հինը, առանց նորը չինելու. քննադատող ամէն ինչ ձեւի՝ եւ ոչ բովանդակութեան տեսակէտից. նիւթական կուլտուրայի երկրպագու, հոգեկան կուլտուրայի զարգացման աշխատանքից խուսափող։

Այս հոսանքը 50ական թուականներից սկսում է եւ շարունակում հետզհետէ ուժեղանալ մանաւանդ 70—80ական թուերին։

Հայ վանքն ու անապատը այլ եւս ի վիճակի չեն լինում իրենց ձեռքում պահելու մտաւոր զարգացման ղեկը. այդ անցնում է աշխարհիկ կրթարաններին եւ նրանք հետզհետէ խամրում թոշնում են ու դառնում միայն նիւթականի համար ապրողներ, միայն պատմական յիշատակարաններ կամ

դուռ արքավայրեր, որ հետաքրքիր ճանապարհորդը, կամ ջերմեռանդ ազօթարարը կ'երթայ տեսնելու անցեալի մնացորդները: Հայ վանքի ու անապատի համար սկսում է մի նոր շրջան, շրջան անկման ու հետզհետէ պատմութեան գիրկն անցնելու, որովհետեւ հոգեկան, մտաւորական ազդակներ այլ եւս գրեթէ չեն մտնում վանքեր, որ մնաց անապատները: Աշխարհիկ գիրն ու գրականութիւնը նոր հոսանքը՝ գրաւել էր բոլորին. վանքում մնում են աւանդական նիթական կենցաղի հոգսին յանձնուածներ, որոնց համար գիտութեամբ, կրօնական ջերմեռանդութեամբ ապրել պահանջ չէր:

Մամուլը՝ հասարակական կարծիքը առաջնորդը եւ դաստիարակողը, որ անծանօթ էր ԺԸ. դարու հային, ԺԹ. դարու կէսից սկսում է դեր խաղալ եւ դառնալ կենդրոն բոլոր հասարակական հիմնարկութիւնների, ի թիւս որոնց եւ հայ եկեղեցու, վանքի, անապատի վրայ: Անծանօթ, անախորժ երեւոյթ էր դա հայ նախկին մտայնութեան աչք մարդկանց համար, բայց ստիպուեցան վարժուել[20]:

Այդ նոյն մամուլի, նորակազմ քաղաքենիների հայ մտայինների ազդեցութեան տակ վանական կեանքն էլ սկսում է յարմարուել որոշ խնդիրներում նորանց պահանջներին: Նախ նահապետական մեծ օջախը՝

[20] Մուրացան, Առաքեալը 226—273 եր.:

հայ վանքը, ուր հաշիւը, կշիռը, հաշուետուութիւն չկար, ընկնում է չափ ու ձևի տակ. քաղաքի կեանքը պահանջում էր այդ ձևը։ Երկրորդ վանքերում փորձ է լինում ունենալու գպրոցներ պատրաստելու կրթուած հոգևորականներ, սակայն դրան այժմ շատ էր հրապուրիչ, ուժեղ, որ վանական խուցն այլ ևս ի վիճակի լինէր դիմադրել դրան։ Երրորդ — աշակերտը այժմ ուսուցչի դէր էր ստանձնել — աշխարհիկն էր իր դիտութեամբ ու պատրաստութեամբ բարձրը, հոգևորականը նրան էր յառում ու նրանից սպասում նորութիւն։

Այս անցումը՝ նահապետական վիճակից ու անտեսութիւնից քաղքենականին ռուսահայ հատուածում դժուարութիւններ, անվարժութիւններ շատ շատացրեց. Միայն գրաբարեան – աշխարհաբարեան հոսանքները ի զուր դիմադրուեցին մի փոքր ժամանակ. ապա ազատամիտ ու պահպանողական հոսանքներն առաջ եկան, որոնք սկսեցին նահապետական ազգային – եկեղեցական և նորաշխարհիկ — քաղքենիական – ազգային պայքարը, որ բնականաբար անձնական հաշուէյարդարը խոշոր տեղ բռնեց։ Հայ վանքը, հոգևորականը այդ պայքարում գործոն դեր չկատարեց, այլ միայն սրան կամ նրան յարող եղաւ։ Նա չունէր պատրաստութիւն, ներքին կազմակերպութիւն և հանգչող՝ կանթեղները մա–

րող վանքերի նման ինքն էլ սկսեց կազմալուծուել ու ապերասան լինել: Այս շրջանում Սեւանի անապատը վանք դարձաւ, այսինքն աշխարհին մօտեցաւ ու աշխարհօրէն ապրելու կենցաղը ընդգրկեց:

## Դ.

Ներսէս Ե. Կաթողիկոսը, որ մինչեւ հայրապետական գահը բարձրանալը խոշոր դեր էր խաղացել ռուսահայ հատուածի քաղաքական ու եկեղեցական շարքերում, ամենայն Հայոց Հայրապետ ընտրուելով մի նոր շրջան է սկսում եկեղեցու վարչական-տնտեսական կազմակերպութեան, հեռու մնալով քաղաքական գործերի մասնակցելուց:

Երեք կարեւոր փոփոխութիւն է նա մտցնում եկեղեցիների եւ վանքերի վարչութեան մէջ: Նախ աշխարհական «մէլիք» վերահսկիչներ է նշանակում մի քանի տեղեր, չվստահելով հոգեւորականներին. երկրորդ հոգեւոր հաստատութիւնների, վանքերի տնտեսութիւնները հաշիւների տակ է դնում եկամտից ու ծախսից արդեանց մատեաններ է մտցնել տալիս. երրորդ մտցրնում է վարչական-ժողովական սկզբունքը:

Առաջներում վանքը կամ անապատը մի մեծ օջախ էր, նահապետական մի տուն,

ուր տան գլուխը փանահայրը ամէն եկա-
մուտքի բացարձակ տէր ու տնօրէնն էր,
ամէն ինչ նրան էր ենթարկւում. և ինչպէս
նահապետական տան մէջ հաշւի մատեան
գոյութիւն չունէր, նոյնը և վանքում ու
անապատում: Այժմ այս կարգերն փոխւում
են, աշխարհիկ տարրի հսկողութիւնն է
մտցնում. կոլլեգիալ վարչութեան եղա-
նակը և հաշւատւութեան սկզբունքը:

Սեւանայ անապատը, իբր մեծ վանք
ուշադրութեան է առնում Ներսէս Ե.ը և
կարգաւորում է այն եւս այդ սկզբունք-
ների հիման վրայ:

Բնական է, որ երբ աղօթաւոր ճգնա-
զգեացների կեանքի մէջ հաշիւն ու չափը
մտնէ, երբ հաշւատւութեան ու հաշւետւու-
թեան սկզբունքը գործադրւում էր այլ եւս
անապատականի միամիտ կենցաղը պիտի յե-
ղաշրջւէր. երբ նա հաշւի մէջ պիտի խառ-
նւէր այլ եւս նրա հոգին պիտի պղտորւէր
հարազատ և անհարազատ վերաբերմունք
ունենալու ցանկութիւններով: Սեւանի ա-
նապատականը սովոր էր հացն իսկ արհա-
մարհել կամ միայն հացով բաւականանալ
ԺԹ. դարու սկզբում. այժմ ԺԹ. դարու
երկրորդ կիսում նրան ուտեստի, դրամի
հաշւի պահող են դարձնում. ճգնաւորական
տարրը — աշխարհիկը և աշխարհայինը
ուշադրութեան չառնելը, հանւում է մէջ
տեղից: Բնականաբար մեծ-օձախ անապատը

դառնում է երեւմտական հաշուապահական հիմնարկութիւն ու անապատը կորցնում է իւր հմայքը եւ խոշոր բարոյական ազդեցութիւնը։ Դուրսը — աշխարհը փոխուել էր եւ այդ դուրսը իր կարգերը թելադրում եւ մացնում էր եկեղեցու, վանքի, հոգեւորականութեան մէջ։ Նկատեմ եւ այն, որ Սեւանը 1836 թուից յետոյ դադարել էր անկախ թեմ լինելուց եւ դարձել էր մի սոսկ վանք իւր կալուածքների եկամուտներով ապահովուող. այլ եւս ժողովրդից պտղի, հոգեբաժին, ծխահարկ չէր ստանում։ Էջմիածնի սինոդն էր նրա հոգիներին հսկողը, նրա եկեւմուտքը քննողը, մի սուտ սարք եւս խառնում էր անապատի գործերին։ Այսպէս անկախ — ինքնօրէն անապատը դառնում էր ենթակայ, ստորադաս եւ մի այլ հիմնարկութեան հրահանգներով ղեկավարուող վանք։ Խախտում է հայ վանքի սկզբունքը — ինքնօրէն կառավարուելու հին կանոնը. ռուս իշխանութիւնը կողմնակի ճանապարհով հայ ժողովրդի բարոյական-գիտական հիմնարկութիւնները իւր հսկողութեան տակ է առնում. սուտ ձեւեր, կարգեր մացնում եւ նպաստում ժամանակի հոսանքի հետ, որ այդ հիմնարկութիւնները թուլանան ու հանդչին, ինչպէս եւ հանդան վերջի վերջոյ։

1846 Հոկտ. 22ին Թ. 295 կոնդակով Ներսէս Ե.ը նշանակում է Սեւանայ մշարն-

ջենաւոր վանահայր Յովհաննէս Վ.ին եւ նրան գործակիցներ վանքը կառավարելու համար Պալուսաս արքեպս. Տրդատեանին եւ Մղտեսի Յակոբին. այսին է հետեւեալ հրահանգը միաբաններին եւ վանքի կառավարութեան համար[21]. ա. Ձեր այոն՝ այո՛ լինի եւ ոչն՝ ո՛չ. բ. կրօնաւորներն իրար պարտաւոր են շահել եւ համեստ կենցաղավարութիւն ունենալ. գ. ուխտադրուժ չլինին. դ. լինին հեզ խոնարհ եւ միմեանց կարեկից. ե. անհարազատ չլինին դէպի Սեւանի որեւէ իրը. զ. եկամուտներն իսկոյն գրեն ժողովութեան մատեանում. է. ուխտաւորներին յոյս ընդունեն. ը. շարժական եւ անշարժ կայքի նոր ցուցակ կազմեն. թ. կերակրի նիւթերը, անասուններին թիւը նշանակեն ցուցակում. ժ. շարժական իրերի համար ունենան առանձին մատեան, անշարժի համար առանձին, պատճէններն պահեն իրենց մօտ, իսկականներն ուղարկեն Սինոդ Ս. Էջմիածին։

1856 թ. Սեպտ. 4ին Տփխիսից տուած կոնդակով Ներսէս Ե.ը ընդարձակ հրահանգ է տալիս այն ժամանակուայ վանահայր Մկրտիչ Վ.ին, անապատի միաբաններ Յարութիւն Վ. Մարգարեանին, Կարապետ Վ. Բիւլբիւլեանի եւ նորընծայ Յովսէփ աբեղային, որ միասին կառավարեն վանքի

[21] Համառօտած եմ գրաբար բնագրից։

թէ ներքին եւ թէ արտաքին գործերը. տարաձայնութեան դէպքում դիմեն Նոր-Բայազիտի Բարսեղ աղա Արծրունուն, որին նա նոյն թուի Յունիսի 28ին թ. 393 կոնդակով վերջին էր նշանակել Նոր-Բայազիտի շրջանի եկեղեցիների, նաեւ Սեւանի անապատի:

Ահա այդ հրահանգը ամբողջապէս, որից որոշ երեւում է, թէ ո՛րքան անապատականը կշռի ու հաշուի առել է առնում, ինչպէս նրա ուժը եւ միտքը կենդրոնացնում է անհատական խնդիրների վրայ եւ նրա վրայ ծանրանում է մեծ պատասխանատուութիւն, մի հանգամանք, որ անապատականի հոգին պիտի նիւթականի հետ կապէր, նրան պատրաստ աղօթարար լինելուց դարձնելը մի պաշտօնեայ-չինովնիկ, որին մէջ կարող են դատապարտել. այն ժամանակուայ ահարկու եւ տրուպ պաշտօնեաների համար ամենազօր Սինոդի առաջ: Եւ ո՛ւր կը մնար երկրի վրայ երկնայինը ապրելու պահանջը եւ հնարաւորութիւնը:

1. Զամենայն եկամուտ վանիցն թէ յիւրաքանչիւր գիւղօրէից կամ ի գիւղական ժողովրդոց եւ թէ ի ջրաղացած կամ յայգեաց եւ կամ յայլ կալուածոց եղելոց, որ եւ իցենն գրել յատուկ յատուկ զամենայն արդիւնսն, թէ դրամական եւ թէ արդիւնի եւ իցէ նիւթեղէն գրել անուամբ տուողացն զայնս եւ որքանութիւն թուոց կամ կշռոց կամ դրամական գումարաց:

2. Պատուիրել նոյնպէս, զի և ամենայն օրական նուիրանն ուխտաւորաց եկեղեցւոց ի վանսն, թէ շատ և սակաւ ի նմին ատուր գրել ի Հաշուէմատենանի և պատրաստել զմի գանձանակ, արժանաւոր ամուր փականօք և զամենայն զգումար նուիրանաց արկանել յայն գանձանակ և ի շաբաթն մի անգամ բանալ և համեմատութեամբ նշանակելոյն ի Հաշուէմատենին ստուգել և պահպանել որպէս և անկապակծելի համարել ունեցին: Որոյ աղագաւ տնօրինեցաք, ըստ յաջողելոյ Աստուծոյ թէ որպէս պարտ իցէ մատակարարել զայնոսիկ նուիրանն ուխտից ի բարեպաշտ նուիրողաց:

3. Նոյնպէս և զամենայն օրական ծախս գրել ի Հաշուէմատենին նշանակութեամբ անուանց և չափուց կամ կշռոց իրացն գնելոցն և որքանութեանց գնոյն իւրաքանչիւրոց:

4. Զամենայն զգումար տարեկան արդեանց վերահասութեամբ չորից վարդապետացն ի Հաշուէմատեանին օրական ի յամսն տարւոյն կամ ի վեց ամիս իւրաքանչիւր անեալ արդեանց առանձին առանձին համարել զգումարն և գրել ի ժապաւինեալ տումարին ունեցելոց ինքեանց ի սինոդէ կնքմամբն: Եւ յատաքելն ի սինոդն զայն ժապաւինեալ Հաշուէմատեանն, ունել առ ինքեանս մշտնջենաւոր ժամանակաւ զիւրեանց օրական եկամտից Հաշուէմատեանն:

5· Զոր ոք ի միաբանից անապատին վանահայրն եւ երեք խորհրդականքն միաբան արժանաւորութեամբ ունիցին պարտաւորել իւրեանց յատուկ պատուիրանաւ, զի յումմէ զինչ ստանալ ունիցի գրեսցի ի միում հաշուատետրի ի ներքոյ իւրաքանչիւր ուրուք ամսաթուոյ համանգերձ անուամբ տուողացն առեցեալ նիւթոյն, համանգերձ որքանութեամբ կշռելի իրաց կշռոյն եւ չափելի իրաց չափոյն եւ համարելի իրաց քանիօքն, զի բաց այնոցիկ կարող լինիցին որոշել վասն գրեցելոյն ճշմարտութեամբ կամ ոչ ճշմարտութեամբ եւ ճանաչել զհարազատան վանիցն եւ եղբարց միաբանութեան:

6· Պատուիրել չորից վանքական կառավարչացն ոչ ընկալնուլ ի միաբանութիւն անապատին առանց արժանաւորն վերաքննութեանց վարուց եւ բարուց որպիսարար կենցաղավարութեանցն ի միջի ժողովրդեան բաց որոց կենցաղավարեալ է ցայն ժամանակ յօժարելոց իւրոց մտանել ի միաբանութիւն անապատին, զի բազում են յոյժ անարժան վարուք եւ բարուք մատանողքն ի վանորայս, անօգուտ հոգւոյ իւրեանց եւ սրբութեանց ուխտին եւ վնասակար խռովարարութեամբ եւ զանազան անարժան վարուք: Նաեւ որք մտեալ լինիցին ի յանապատն եւ լիցին հանդիստ վարուք եւ ջերմեռանդ առ իւրեանց կրօնաւորութիւն եւ իցեն խաղաղարար եւ խոնարհակիչ վարուք,

ունիցին իբրու ունք վանահայրն եւ խորհրդակիցք իւրեանց արտաքս վարել զայնպիսիս եւ զրկել ի միաբանութենէն սորին անապատին զամենայն աշխարհական միաբանեալսն․ իսկ հոգեւորականացն եղելոց այնպիսիս անարժան վարուք յայտնելով սինոդին էջմիածնի վասն որպիսութեան անարժան վարուցն եւ անհանդիստ կենցաղավարութեանցն, սինոդական արժանապատուութեամբ այնպէս զրկել ի միաբանութենէն անապատին Սեւանայ եւ առաքել յայլ վանորայս, ուր արժան դատել լինիցի ։

Է․ Զբաղանք եւ այգիք անապատին եւ այլ մասնաւոր վարելահողք կամ առունք կամ խանութք ոչ վանահայր եւ ոչ խորհրդական երեք վարդապետքն առանց բանի տուտուածաէր անձանց խորհրդակցութեան, եւ առանց համաձայնութեան ձերում սինոդականութեան (Բարսեղ աղա Արծրունու) չունիցին զիրաւունս տալոյ տարեկան նշանակեալ վարձօք ում եւ իցէ ։ Իսկ վասն գիւղօրէից անապատին յանձն առնեմք ձերում ազնուականութեան, զի դուք նախ խորհրդակցութեամբ ընդ գիւղականաց ընտրեսջիք ի գիւղօրայս անապատին լինել կչռադատ այնպէս, զի տուրք ժողովրդեան չունիցին համարել ոչ զրկանք իւրեանց եւ ոչ զրկանք վանիցն, այլ հանճարաւոր արժանապատուութեամբ նշանակեսցի վասն իւրաքանչիւրոց սերմանեաց ցորենոյ, գարւոյ եւ

այլ որոց և իցէ սերմանեաց և վասն գլխահարկաց և անահարկաց և իւղոյ և սպանդոյ ի գամչոց, ի կովուց և յոչխարաց այնպէս, որպէս և որքան պատել ունիցիք համաձայնութեամբ բարեպաշտ գիւղականաց տանուտերին և այնպիսի ժամանակի տատանալոյ զմասն տանուտերին ի նշանակելոցն իւրաքանչիւրոց կարգել զմին ի քահանայից և զմի կամ զերկու ժողովրդականաց բարեյոյս անձանց, և յանձնելոյ նոցա զհաշուացուցակն վասն նշանակելեայ նիւթեզինացն կամ զրամականն արդեօք ստորագրելոց ի ձեր ազնուականութեանց և ի ձերոց խորհրդակցաց և վանահօր և նորին խորհրդակից կառավարչացն տանուտերի:

Տ· Եւ ի վերայ այսօրիկ եօթն հաստատեալ նշանակեցելոցն ի մէնջ ութերորդ եւս առաք ձեզ զայս մեր արժանապատուութիւն, զի ընդ ձերոց խորհրդականաց և ընդ վանահօրն և նորին խորհրդակից երից վարդապետացն արժանապէս խորհրդակցութեամբ և բարւոք կշռադատութեամբ, որպէս և ունիցիք դուք ճանաչել արդար և աստուածահաճոյ, այնպէս մանրամասնին հանգամանօք որպէս և ունիցիք արժանաւորել և վճռահատել վասն իւրաքանչիւր արդեացն ի ընակչաց գիւղօրէիցն տանուտերի, ի ծանուցանել մեզ ձերով գրութեամբ ձերում խորհրդականաց ստորագրութեամբ, մեք եւս ըստ մերում մտահաստութեանց հասու եղեալ

ողորմութեանց ձերում արժանաւորութեանց, եթէ երեւիլ ունիցին մեզ կամ սրբազին էջմիածնի թերութիւն ինչ, յայտնեսցուք ձերում խորհրդակից միաբանութեանց, իսկ եթէ գոյցին առանց ինչ թերութեանց, հաստատեսցուք եւ մեք եւ սիրողն էջմիածնի զձեր անորէնութիւն, վասն որքան ժամանակ գտանել լինիցի:

Կաթողիկոս ամենայն Հայոց Ներսէս:

Կաթողիկոսի կոնդակը ցոյց է տալիս, թէ Սեւանայ անապատում ինչպէս միաբանութեան կենցաղը եւ աշխարհահայեացքը փոխուել էր. որ այն տեղ նիւթական շահով առաջնորդներ շատ կային, որ անհարազատ վերաբերմունք կար դէպի վանքի եկամուտը եւ որ հոգեկան կեանքով ապրելու պահանջից հեռացող, բարոյական սկզբունքները թուլացրած այդ միաբանութիւնը պարփակուելով մի փոքրիկ կղզում, դրսի շփումից հեռու լինելով, բնականաբար բամբասանքի, կագ ու կռուի մէջ էր ապրում. եւ շատ էր հեռացել իր հիմնադրի աւանդներից: Հայ շրջապատը այդ էր թելադրել անապատին, հայ գիւղացին նոր նոր էր սկսում կուլտուրական կենդրոնի հետ շփուել. նա մեծ չափով դեռ իր օդայում էր իր մտաւոր սնունդը գտնում: Իսկ այդ սնունդը բամբասանք, խծբծանքն էր, գծուծ հաշիւր, կոպէկի պաշտամունքը: Այդ ամէնը ներս էր տանում հայ մարդը Սեւան ու

անապատականը նոյնն էր կրկնում. անապատը դրախտի մի կտորն էր։ Կաթողիկոսը կոնդակով ուզում էր դրախտի ազդեցութիւնը կարել, հեռացնել մենաստանէն, չենթադրելով թէ այդ ջուրը հեղեղ է, որը ոչ թէ թղթերը, այլ և ժայռերը կարող է կործել իր տեղից։

Սինոդի միջամտութիւնը վանական գործերում անցանկալի է համարուել բոլոր վանահայրերի կողմից. նոյնը եղել է և Սեւանայ անապատում։ Վանահայր Մկրտիչ Վ.-ը 1850 թ. Յուլիսի 17ին գրել է կաթողիկոսին, որ Սեւանայ անապատը հանէ սինոդի հսկողութիւնից. այդ օտար ազգի հսկողութիւնը եղել է օրէնքի և աւանդերութեան կնիք ունեցող յաճախ, ուստի և անապատը, ինքնօրէն կառավարուող մարմինը բողոքել է բիւրոկրատիկ միահեծանութեան դէմ. տակայն Ներսէս կաթողիկոսը անհետեւանք է թողուցել անապատի բողոքը, իսկ սինոդը լսելով այս յանդիմանել է վանահօրը, որ համարձակել է վեհափառին գրել. այս աւելացնում է. «Սինոդս գոլով ծայրագոյն ատեան, ուրեմն և հոգատար ամենայն հարկաւորաց վան ենթադրեալ իւրում տեսչութեան վանօրէից և եկեղեցեաց...» կարգադրում է չվստահանալ այլ եւս նման խնդրով գրել կաթողիկոսին։

Օտար պետութեան նշանակած սինոդը,

ընդդիմանում էր իր Հարաւային վանքի ինքնօրէն լինելու պատմական ձգտման։ Հայ վանքը զրկուելով իր իրաւունքից դառնում է սինոդի իշխանութեան դերի․ իսկ աստուածները կորցնում մարմինը բնականաբար կամ կը փակուի կամ կ'ապրի կիսալանջ, ինչպէս Ի․ դարի սկզբի մեր վանօրէից վիճակն էր ցոյց տալիս։ Տիրող ռուս իշխանութիւնը բիւրոկրատ միապետական էր, կենդրոնացնող ամէն ինչ, հայ ժողովուրդը, նրա հետ եւ հայ եկեղեցին պէտք է յարմարուէր դրան․ եւ հայ մանր-քաղքենին թելադրում էր իր ազգային մեծ հիմնարկութեան նոյն բիւրոկրատացումը, հոգեւոր դասը այդ թելադրանքը լսում էր։

Հանկնայու Համար Ներսէս Կաթողիկոսի յիշեալ դրարար հրահանգը, այն կէտն ու չափը, այն գլխաւորէն ու պայքին, որ նա հրահանգում է չափել, կշռել ու համարել, հարկաւոր է ծանօթանալ այդ ժամանակուայ Ռուսական անտապասի եկամուտների, նրանց ստացողների հետ։ Անտապասի դիւանում եղած հաշուէմատեաններից քաղելով դնում եմ ստորեւ այդ հաշիւներից նմոյշներ, որը ցոյց կը տայ եւ միտպանութեան աղբուսակի ինչ լինելը եւ թէ ինչ կալուածներ, եկամուտներ ունէր անապատը, որ այդպիսի հրահանգ տուեց Ներսէս կաթողիկոսը։

սուն մորթում են 32 հատ։ Մխարանների զգեստ, չալ՝ 17 թոփ, թոփը՝ 3 ռ. 50 կ., 5½ թոփ ղանկոյ, գազը՝ 17 կ., 23 գզակ, հատը՝ 1 ռ. 50 կ., 17 թոփ մահարվարի, թոփը՝ 5 ռ., 4 փ. սապոն, փութը՝ 4 ռ.։

Մենաստանն ունեցել է 19 պղինձ, 8 գիւգիւմ, 5 իբրիկ-լագան[22], 9 չայդան, 8 սինի, 2 փլաւքամիչ, 2 քաֆկիր, 4 աբի-դարդան, 3 բադիեայ, 3 լանգարիք, 11 ուրագ, 11 սղոց, 3 դուր, 3 չաքուչ, 7 դեղան, 4 փուքս, սիկ, խնոցի, 48 եօրղան, 33 դոշակ, 50 բարձ, 24 խալիչայ, 16 կարպետ, 11 քէչայ։

Խաչ՝ 33, սկիհ՝ 4, բուրվառ՝ 5. քշոց՝ 4, ջահ՝ 5, կանթեղ՝ 3, Աւետարան՝ 6, Ճաշակարան՝ 21 եւ այլն։

Մենաստանը ունեցել է 112 ձեռագիր[23], 541 տպագիր գրքեր։

Այս թուին մենաստանի զգեստների խորանը հրդեհ է ընկնում. այրւում են, չուրջառ՝ 19, փորուրար՝ 10, ուրար՝ 5, շապիկ՝ 48, բազպան 8 զոյգ։

Մխարանութիւնը իրաւունք չունէր բամբակի կտորներից զգեստներ հագնելու, այդ տարին դիմում են եւ խնդրում սինոդին, որ թոյլ տրուի իրենց բամբակէ կտորներից զգեստներ հագնել. մի բան, որ վերջ ի վեր-

---

[22] Անունները, ուղղագրութիւնը պահել եմ բնագրինը։

[23] Մատենադարան ցուցակը տես Գեղարքունի 128—129 եր.։

ծոյ սկսում է գործադրուել, մինչեւ անգամ մետաքսէ կտորը:

Միաբանները ժամանակի տրամադրու-թեան համաձայն փոփոխել կենցաղի են ձգտում, սակայն եւ 1857 թ.ին սինոդին յայտնում են, որ իրենց բնակարանները կցրուր վերի մասում անյարմար է, ջուրը եւ նաւահանգիստը հեռու է, խնդրում են թոյլ տալ ցածում շինել սենեակներ եւ շինում են 16 սենեակ, 8ը մի կողմ, 8ը հակառակ կողմը, միացած մի ծածկուած միջանցքով: Ամէն միաբան ունենում է 2 սենեակ, մէկը աշխատանքի միւսը ննջարան, մինչդեռ անա-պատականները միայն մի խուց ունէին, ա-ռանց կրակ վառելու էին ապրում: Այս ինչպէս առանձնականի կենցաղը դառնում է վանականի կենցաղ ու աշխարհահայ-եացքը՝ ձգտումը կուշման հասկացողութիւնը փոխում է: Այլ եւս հոգեկանը չէ Սեւանի միաբանի ուշադրութեան առարկան, այլ մարմնական հանգիստը:

Դաւանական անտարբերութիւնների, դրա-դրութիւնների ու պայքարի պատճառ են դառնում 1846 թուից Ռուսաստանից գաղ-թեցրած մոլոկանները, որոնք տեղաւորւում են Եղինովկա, Ալէքսանդրովկա, Կոստանդի-նովկա, (Դարաչիչակ) Ն. Ախտա, Սուխոյ, Ֆոնտան գիւղերում, նպատակ ունենալով ռուսացումը արագացնել Կովկասում, եւ միւս կողմից ազատուել անհանգիստ տար-

բերից Երկրի ներսում: Յատկապէս Ելենով-կայի մոլականները սկսում են մենաստանի հողերը գրաւել, այն տեղերում ջրաղաց շինել, որը վնասում է մենաստանի ջրաղացին: Մենաստանի վանահօր դիմումները սինոդին մեծ մասամբ մնում են անհետեւանք.[24] Մոլականները աստիճանաբար գրաւումներ են անում եւ Սեւանայ մենաստանի վանահայրերը մինչեւ 1910ական թուականները միշտ էլ բողոքում են ու մնում անպատասխան: Այս պայքարը տնտեսական բնական վնաս է տալիս անապատին եւ հայ գեղացուն եւս դրդում է նման վերաբերմունք ցոյց տալ դէպի մենաստանը:

1860 Թ. Եկամուտը·

| | | | |
|---|---|---|---|
| Մնացորդ | 1859 Թուից | 795 ռ. | 94½ կ. |
| Մուտք | 1860 Թուից | 2584 ռ. | 14 կ. |
| Ելք · | 1860 Թուից | 2386 ռ. | 65½ կ. |

Արդիւնք Ցամաքաբերդից՝ ցորեն 8 խ. 5 լ., գարի՝ 15 խ. 52½ լ., հաճար 3 խ. 52½ լ., կտաւատ 76 լ.: Գոմաձորից՝ ցորեն՝ 13 խ. 7 լ., գարի 23 խ. 50 լ. հաճար 4 խ. 3 լ., կտաւատ 40 լ.: Անասնեղէն ունի մենաստանը 76 գլուխ:

---

[24] Իբր ռուս պաշտօնէութեան վերաբերմունքի նմոյշ յիշեմ ի միջի այլոց, որ 1857 Թ. Երեւանի նահանգապետի կինը, ուխտի է գալիս Սեւան, մի ձեռագիր աւետարան մի քանի օրով վերցնում է եւ այլ եւս չի վերադարձնում:

Ս. Նշանից արդիւնք. ցորեն՝ 20 խ. 99 լ., գարի՝ 6 խ. 22 լ.:

1861 թուից Նոր Բայազէտցիք եւ այլ գիւղականներ կազմում են մկալայգիր, որ մէջի ձկնատեղին (երբեմն կղզի եւ երբեմն թերակղզի, — Սեւանի պատկանող) եւ Ցամաքաբերդի առաջ գտնուող ձկնատեղին պատկանում է Սեւանայ մենաստանին, կտրած պարտից տիրապետութիւնից եւ այդ տեղերը կապալով է տրւում զանազան մարդկանց: Այդ կղզու խնդիրը վերջացել որոշւում է յօգուտ վանքի, Տփխիսի դատաստանական պալատի 1879 թ. Սեպտ. 28ի վճռով, որով 36 դեսեատին 1920 քառ. սաժէն կղզուց վանքին է տրւում:

Մենաստանը մինչեւ 1863 թիւը ձրի վառելափայտ է ստացել Դիլիջանի արքունի անտառից. այդ թուին սինոդը յայտնում է, թէ փոխարքայի դիւանատունը գրում է, որ ըստ օրէնքի ձրի կարող են ստանալ միայն շինութիւնների համար հարկաւոր եղած փայտը եւ ոչ նաեւ վառելափայտը: Այդպիսով մենաստանի եկամուտի մի աղբիւրը փակւում է. վառելափայտը այդ փայտացուրկ երկրում մեծ արժէք ունի, մանաւանդ Սեւանի կղզում, ուր 6—7 ամիս անընդհատ ձմեռ է. բուք ու բորան է, վառելիքի մեծ կարիք կայ: 70ական թուականների վերջում մենաստանի եկամուտն ու ծախսը հետեւեալ պատկերն ունէր:

| | |
|---|---|
| Մնացորդ | 76 թուից 957 ռ. 40½ կ. |
| Մուտք | 77 թուի 5487 ռ. 73 կ. |
| Ելք | 77 թուի 4224 ռ. 36 կ. |

Ծամաքաբերդից ստանում են՝ ցորեն՝ 14 խ. 4 լ., գարի՝ 9 խ. 90 լ., հաճար՝ 4 խ. 80 լ., Գամաձորից՝ ցորեն՝ 8 խ. 50 լ., գարի 19 խ. 63 լ., հաճար՝ 2 խ. 69 լ., կտաւատ՝ 15 լ.։

Այս ամէնը գործադրւում է ըստ այսմ մօտ 20—25 միաբանի եւ 15—20 ծառայողների համար։ Աւելացնենք եւ անասնեղէն՝ ոչխար, կով, մատակ, եզն եւ այլն. յիշատակենք այն, որ Գէորգ Դ. Կաթողիկոսը խստիւ պատուիրել էր սինոդի միջոցով վանքում առ հասարակ գինի եւ օղի չպահել եւ չպատրաստել վաճառականութեամբ եւ պարզ կը լինի, որ այդպիսի եկամուտներով, այդպիսի պատուէրներ ստացող մենաստանը այլ եւս անապատ չէր եւ ոչ էլ ճգնաւորներ կային այնտեղ, այլ պարզ վանքում ապրողներ, որոնք աշխարհիկանացել էին ժամանակի ոգու համաձայն։

Մենաստանը իւր հաշիւները պահելու համար գործ էր ածում սինոդից ուղարկուած հետեւեալ մատեանները. 1. Մուտքը եւ ծախսը գրելու, 2. Հաշուացուցակ եկեղեցական անօթից եւ զարդուց, 3. Հաշուացուցակ կալից անդաստանին Աւանայ, 4. Պատճէնք գործունէայ թղթակցութեանց,

ընդ որս են եւ հասարակ թղթադրութիւնք,
5. Ստացած թղթերի ցուցակ:

| | Մուտք | Ելք | Մնացորդ |
|---|---|---|---|
| 1. Ցորեն՝ | 155 խ. 18 լ. | 82 խ. 93 լ. | 72 խ. 25 լ. |
| 2. Գարի | 56 խ. 21 1/2 լ. | 26 խ. 88 լ. | 29 խ. 63 1/2 լ. |
| 3. Ալիւր՝ | 43 խ. 73 լ. | 34 խ. 41 լ. | 9 խ. 32 լ. |
| 4. Բրինձ՝ | 5 խ. 39 1/2 լ. | 4 խ. 20 լ. | 1 խ. 19 1/2 լ. |
| 5. Զաւար՝ | 4 խ. 50 լ. | 2 խ. 60 լ. | 1 խ. 90 լ. |
| 6. Լօբի՝ | 1 խ. 6 1/2 լ. | — խ. 63 լ. | — խ. 43 1/2 լ. |
| 7. Իւղ՝ | 2 խ. 49 լ. | 1 խ. 55 լ. | — խ. 94 լ. |
| 8. Պանիր՝ | — խ. 57 1/2 լ. | — խ. 43 1/2 լ. | — խ. 14 լ. |
| 9. Սիսեռ՝ | — խ. 50 լ. | — խ. 35 լ. | — խ. 15 լ. |
| 10. Ոսպ՝ | — խ. 32 1/2 լ. | — խ. 21 1/2 լ. | — խ. 11 լ. |
| 11. Գինի՝ | 4 կարաս | 1 կարաս | 3 կարաս |

Ահա ի՛նչ ձեւական բիւրոկրատ միջոց-ներով խճողուած էր նախկին պարզ կեն-ցաղը մի. դարու ծղնադզեաց անապատը.

ի՛նչ անասնական վիճակ ունէր, երբեմն չոր հաց ու ջուր գործածելով բաւականացող միաբաններին մենաստանը։ Մենաստանը դարձաւ մի ժամանակ էլ պատժատեղի, ուր աքսորում են վատ բարքուվարքի տէր հոգեւորականներին եւ այնպէս էր մնաց գրեթէ մինչեւ մեր օրերը։

Մենաստանի բնոյթի փոփոխելն ի նկատի ունենալով Ներսէս Ե. Կաթողիկոսը 50ական թուականներից թոյլ տուեց նաեւ կանանց մուտքը մենաստան, մինչդեռ մինչ այդ կանայք մուտք չունէին։ Անշուշտ ԺԹ. դարու առաջին քառորդում նման կարգադրութիւն չէր լինի, քանի որ անապատը դեռ ունէր իր բարոյական կրօնական արժէքները, ունէր մարդիկ, որոնք դեռ անապատին էին փարել եւ անապատի կանոներով էին ապրում։

Տնտեսական կեանքի հողը շուտ էր կլանել միաբանութեանը եւ մենաստանը գրեթէ դադարել էր գրագէտներ ունենալուց։ Հայոց հայրապետները անտեսում են այդ ու գիտակցում, մանաւանդ թէ ժամանակի մամուլի ձայնն էր յաճախ եւ ուժգին լսւում նրանց ականջին, որ եթէ վանքերը կրթարաններ, դպրոցներ չունենան բոլորովին կը չորնան ու կ՚անհետանան։ Ուստի Մատթէոս Ա. Կաթողիկոսը 1864 թ. Յունուար 3ին Թ. 3 գրութեամբ մենաստանի միաբանութեանը առաջարկում է իր ուղար-

կած մի ախրացուի հետ պարապել, իսկ եթէ մենաստանի մէջ կրթող չլինի, խոստանում է ինքն ուղարկել մի դրադէտ «առ ի կրթել զայս եւ զմխարանութիւն ձեր յաղատականն ուսմունս, քան որում եթէ որ ոչ իմասցի զաղատականն արուեստս ոչ կարէ ի միտ առնուլ կամ իմանալ զմիտս սուրբ գրոց եւ լուսաւորել» :

Ուշագրաւ է այն նախ, որ երբեմնի ընթերցասիրութեամբ եւ գրքերով յայտնի մենաստանում ենթադրում էր, որ մի գրադէտ իսկ չլինի, գրադէտ — ոչ ի հարկէ այլուրենն իմացող, այլ ժամանակի պարզ, աշխարհական գիտելիքներ գիտցող. երկրորդ, որ «ազատ արուեստները» սկսում են ներմուծել նաեւ վանքերում. այդ նշանակում է այն աշխարհիկ գիտութիւնները, որոնք ժամանակի ծխական եկեղեցական դպրոցներում գործադրւում են։ Անապատն եւս իր դռները բանում է դրսի ուժի հոսանքի առաջ. դուրսի կեանքը տարէցտարի աւելի ու աւելի նուաճումներ անում անապատում։

Սեւանում վանական դպրոց բանալ չի յաջողում չնայելով 1869 եւ 1876 թուերին արած փորձերին. երբ վերջին անգամ Գէորգ Դ. Կաթողիկոսը ուղարկում է Եղիա Վ. Հասան–Ջալալեանին, որ Սեւանում ուսուցիչ լինի ամսական 20 ռ. ռոճիկով եւ տեղի դպիրների հետ պարապէ հայերէնի, քե-

րականութեան եւ քրիստոնէական վարդապետութեան։ Դիւանի գործերից երեւում է, որ վանահայրն ընդդիմադրում է այս կարգադրութեան իսկ, եւ միայն կաթողիկոսի սաստիկ հրամանից յետոյ հպատակում է։ 60ական թուականների վերջերում Սեւանայ անապատն այցելող Մեսրոպ Վ. Սմբատեանը այսպէս է բնորոշում անապատի միաբանութեան մտաւոր վիճակը. «Ազատական արհեստք մեծ երկիւղիւ հեռու է վախել այս կղզուցս, որ երբեմն վասաւոր աթոռ գրած բազմել էր վեհանձնութեամբ։

«Վարդապետք, սարկաւագունք եւ դըպիրք, որք 20 էին թուով, միայն գիտեն հայերէն կարդալ եւ գրել, գործնական բ. կամ գ. կարգի աշակերտաց չափով՝ որ է մի դասեան դպրոցի ուսումն, եւ այն այլ ոչ կանոնաւոր։ Ցաւն այն էր, որ ամենեւին սէր եւ փոյթ չունէին ուսումն առանձնայու եւ հարկաւոր դէպքում ժողովրդին պիտոյանալոյ քարոզութեամբ եւ ուսուցչութեամբ ժամանակիս պէտքերու պահանջին համաձայն [75]»։

Նման ձեւի ակնարկ է անում նաեւ Սարգիս Եպ. Հասան-Ջալալեանը իւր ճանապարհորդութեան Բ. հատորում. 50ական թուականների վերջերում ասելով. «Ես չկամիմ բամբասել գեղջարս իմ, սակայն

---

[75] Գեղարքունի 128 եր.։

ատեմ պաշտպանին, քանզի տեսանեալ իմ զբաղ-մանցի դիտանի մասանս ժողովելոյս ան-դէն, մանաւանդ ընդ փոքր մասնացութեան, ի մէջ բերի խմբոյն թէ մի գուցէ ժողովելոյն աստէն զդիւրութիւն անձանց եւեթ խըն-դրեն [26]»:

Ահա այս երկու ականաւոր արտայայտ կրօնաւորները թախծով, վշտով անձնում, ըմբռնում են, որ նախկին անտարբեր չկայ, որ ռուսահայ կեանքը փոխուելիս, փոխուել են ժամանակի պահանջները, անապատն էլ փոխուել է մտաւորից տնտեսական կեանքի պաշտամունքին անցել. հինը մոռացել է եւ նորից էլ հեռու է մնացել, ուստի եւ դար-ձել է իրենց անձի դիւրութեան մասին մտա-ծողների մի պատահական ապաստանարան:

## Է.

Անապատական կեանքի աչքի ընկնող նշանը Սեւանի մենաստանում այս շրջանում էր՝ միաբանների հոգատար, որոշ չափով եւ ժամերգութիւնը, որը սովորական ժամեր-գութիւնից տարբերւում էր, ուստի եւ կա-րեւոր է ծանօթանալ դրա հետ: Այս ժամեր-գութիւնն էր, որ այցելուի, ուխտաւորի վրայ թողնում էր տպաւորութիւն եւ որոշ չափով անապատի փառքը բարձրացնում [27]:

[26] Սարգիս եպ. Հ. Ջալալեան ճանապարհոր-դութիւն Բ. հտ. 108 եր.:

[27] Ժամերգութեան մասին գրած ունի Յուսիկ

Գիշերային ժամը սկսուել է ձմեռը գիշերուայ ժամի 3ին, ամառը՝ 1ին։ Լուսարարի օգնականը գնացել է հերթական վարդապետի դուռը ծեծել. գնացել է եկեղեցի, բուրվառը վառել ու բոլոր պատկերներին խնկարկել, մինչ այդ հերթականը եկել է եկեղեցի եւ ասել «Օրհնեալ Տէր մեր Յիսուս Քրիստոս». լուսարարի օգնականը խփել է երրորդը. հերթականն սկսել է «Հայր մեր»ից յետոյ յաջորդ օրուայ ձայնի Սաղմոսի կանոնը. մինչ սա սաղմոսն է ասել, լուսարարն սկսել է կոչնակով բոլոր միաբաններին դռներն թակելով։ Դրանից յետոյ սկսել է կոչնակով երկար ժամանակ տախտակին ծեծել, այս խփել է հասարակը։ Բոլոր միաբանների համար պարտաւորական է եղել հասարակից յետոյ գալ եկեղեցի, ով առանց յարգելի պատճառի եկեղեցի չի եկել, զրկուել է նոյն օրուայ հացից. ճաշի ժամանակ նրա բաժինն էլ դրուած է եղել, երբ գանգատու միաբանը ճաշի է նստել նրա առաջից հացը վերցրել տարել են. նա նստել է մինչեւ վերջը առանց ճաշելու։

Միաբանների ժողովելուց յետոյ օրուայ հերթականը իբր ժամօրհնող[28] սկսել է

Եզ.-ր «Աստղաբաշխականներ եւ փանականութիւն» աշխատութեան մէջ, էջ 143—153. իմ տեղեկութիւնները քաղել եմ նոյն մենաստանի միաբան Արիստակէս Վ.-ից, որոնք եւ մի փոքր աւելի մանրամասն են եւ մի քիչ տարբեր։

[28] Հերթականութիւնը եւ ժամօրհնողութիւնը յաջորդաբար շաբաթուայ մէջ կատարել են երկու վարդապետներ։

«Հրաժարիմք»ը, ապա Հերթավարն տալ է «Խոստովանիմք եւ հաւատամք»ը, ապա շարել է, վեղարը հանել եւ բարձր ձայնով անգիր տալ է «Մեղայ»ն, որ առնում էր ի դիմաց բոլոր միաբանների. Ժամօրհնողը «Ողորմեացի»ն տալ է. Եւ ապա առաւօտեան կերպով առաւօտեան ժամն տալ. պատարագի օրերին տալ են «Զարթիք»ն եւ կից «Անբաժանելի», որ կայ ժամագրքում։ Ամէն շաբաթ օր թէեւ պատարագ չէ եղել, բայց մինչեւ Օրհնութիւնը եղել է պատարագ օրուայ ժամերգութիւնը. մինչեւ որ Մկրտիչ Ա. կաթողիկոսը 1901 թուին կոնդակով վերացրել է այդ կարգը։ «Զարթուցեալքս» բարոզից յետոյ ժամօրհնողը տալ է սրբոց տօներին 50, պահոց օրերին 100 «Տէր ողորմեա», ապա կցել է աղօթք. «Տէր դու անեղծեր, մի կորուսաներ եւ զգործս ձեռաց քոց մի անտես առներ, բարեխօսութեամբ սրբոյ Աստուածածնի եւ ամենայն սրբոց քոց յիշեա՛ զմեզ Տէր եւ ողորմեա» (ժամագրքում այս մասը չկայ)։ «Զքէն գոհանամք» աղօթից յետոյ սկսել են նախընթաց եւ նոյն օրուայ երկու կանոն սաղմոսն տալ թէ, ժամօրհնողը եւ Հերթավարը։ Նոյն ժամանակ ժողովրդի մէջ եւ աջ եւ ձախ դասերու տիրացուները եւ մանկաւորները գոյգ-գոյգ եղած, նոյն կանոնները տալ են ցած ձայնով։ Նոյն օրուայ կանոնազլուխը տալ են դասերից ձայնով, իսկ Հերթավարն ու ժա-

մորհնոցը նոյնն ասել են ամենանուամ ցած ձայնով: Մնացածն բառ սովորականին մինչև Հարցը: Այս հատուածի բոլոր փոխերն ասել են յրիւ, մինչև վերջը. Հարցի փոխի մէջ երբ հասել են այն տեղը, որ ասում է «Օրհնեալ ես դու Տէր Աստուած» դասս առ դաս երգել են ձայնով «Օրհնեալ ես Աստուած» Հարցի իւրաքանչիւր տունը, մինչև «Փառք»ի տունը կրկնել են երեքական անգամ. «Փառք»ի ննից սկսած երկուական անգամ: «Մեծացուցէ»ից սկսած մնացեալ չարականների իւրաքանչիւր տունը կրկնել են երկուքական անգամ. եթէ չարականը չորս տնից է, կրկնել են միայն առաջին և վերջին տները երկու անգամ. եթէ հինգ տնից է, կրկնել են սկզբի կամ վերջի տունը միայն. եթէ վեց տնից է, առանց կրկնելու: Աւուրական ժամերգութիւնից յետոյ ասել են «Արեւագալ»ի ժամերգութեան միայն մաղթանքները, աղօթանքը և աղօթները յրիւ առանց երգերի, պահոց օրերին նաև երգերը, ինչպէս մեծի պահոց օրերին է լինում: Արեւագալի ժամերգութիւնից յետոյ չոքում են բոլոր միաբանները, որոնց տանարին երգում են Ցակովբայ Մծբնայ Հայրապետի հարցից երեք տուն և ապա «Տէր ողորմեա» չորս տուն: «Արի Աստուած», «Զի գիտացաք», «Միջնորդութեամբ», «Արդ անկանիմք», պահոց օրերին երգել են ապաշխարութեան գէ. Հարցի երեք տուն, «Սուրբ

Աստուած» ու մնացեալը նոյն կերպով ։ Չորեքշաբթի օրերը Տէր ողորմեայի մինչեւ երկու տունը երգել են Աստուածածնի նուիրուած երգ «Աստուածածին ամենօրհնեալ» կամ «Աստուածածին Թագ պարծանաց» կամ «Բանին կենաց» եւ այլն. իսկ Ուրբաթ օրերին խաչի նուիրուած երկու տուն «Մեք ի յայն փառան եմք յուսացեալ», «Դողան ի քէն զօրնքդ խաւարին» ։ «Տէր ողորմեա»յից յետոյ մաղթանք «Վասն սրբուհւոյ Աստուածածնին» քարոզ «Սուրբ զԱստուածածին» աղօթք «Ընկալ Տէր». ժամօրհնողն արձակման Հայր մեր է ասել ։

Ճաշու ժամը ձմեռն սկսել է ժամը 8ին, ամառը 9ին. լուսարարի օրինակները իմաց է տալ Հերթականներին որը մի այլ վարդապետի Հետ տալ է մի կանոն սաղմոս, այն կանոնը, որը զիմաց է օրուայ կանոնին (այսինքն եթէ օրուայ ձայնը ակ. է կ'առէ դկ. կանոնը, եթէ աձ. է՝ գձ. ինը եւ այլն) ։ Այդ երբ Հաւաքուել են սկսել են «Ողորմեա»ները ըստ առաւօտականին Կիրակի եւ սրբոց տօներին առանց մեծ քարոզների եւ աղօթների. պաՀոց օրերին, ասում են ինչպէս Մեծ պաՀոց օրերին ։ Առաջին Ողորմեան վերջանալուց յետոյ, եթէ պաՀոց օր է ասում են յաջորդ ձայնի կանոնը. նոյնը եւ բ. եւ գ. Ողորմեաներից յետոյ. ապա Հետեւեալ ձայնի կանոնը ։

Երեկոյեան ժամին սկզբում կարդում են «Ի նեղութեան» կանոնը. ապա տրւում է Հա-

տարակ գանգը․ ախրացուներից կամ վարդապետներից մէկը կարդում է տուրք պատշաճի «Ցայտնաւուրք»ը, վերջացնելուց յետոյ երգում են տանի պատշաճ Ողորմեան, Մեծացուցէն եւ Խաչի շարականները։ Ժամօրհնողն տալիս է «Աղաչեմք ողորմեայ, Տէր բարերար», քարոզ «Սուրբ ծննդաբերն», աղօթք «Որ բնակեցեր» կամ «Պատկէ՛ց սրբոց», ապա մաղթանք «Յիշատակն սրբոց օրհնութեամբ եղիցի, մաղթեալ աղօթիւք եւ բարեխօսութեամբ սրբոց (այս ինչ անուն) որոց յայսմ երեկոյեան երանելի վարուց եւ բարի մահուան նոցին ընթերցաք Տէր Յիսուս ընդ մեզ հաշտեսցիս եւ սրբոյ անապատիս նուէր ընծայողացն սիրով գթասցիս», ապա «Ես առ Աստուած» եւ այլն բառ կարգի։ Երեկոյեան ժամերգութիւնից յետոյ կատարում են խաղաղականը․ բացի տէրունական տօներից։ Սրբոց տօներին «Տէր յայս խմ»ից յետոյ վերջանում է[29], ապա նորից «Տէր ողորմեա»ն, առաւօտեան ժամերգութեան ձեւով․ պահոց օրերին փոխերն լրիւ ասում են։

Հանգստեան ժամ․ արեւմտից յետոյ կատարւում է Հանգստեան ժամերգութիւնը համաձայն ժամագրքի։ Մնացած մանրամասնութիւնները տես Յուսիկ եպ․ Անապատը եւ Վանականութիւն էջ 143—153։

---

[29] «Շնորհեա մեզ Տէր» երգը բառ առանձնութեան կազմած է Սեւանի անապատի հայր. ուստի եւ միշտ ասում են այն տեղ։ Տես Մ. Գիւմիւշխանցի 32—38էր։

Միսիոնարների դպրոցները որոշ չափով անտարապատականի վայել էր. բոլորը հագնում էին ուսուցման ամերիկանից շապիկ, վարտիք երկու տակ, մի երկար արխալ, միւսը ուէ, բրդէ գուլպա, դրսում կօշկոյս (կիտակօշիկ, կարմիր ձեւի). եկեղեցում բոլորն էլ հայաթափի են հագել: Շապկի վրայից արխալուխ, բամբակ դրած, կապոյտ ամերիկանից նախշու չթից, բրդի կապայ, նոյն կտորից շալուար խանչանով, նոյն կտորից վերարկու: Վարդապետները եւ սարկաւագները արտօնութիւն ունէին բարակ կապայի. երկար կապոյտ բանբաշից: Վարդապետները՝ տիրացուները եւ մահտեսիները վանքի մէջ ամառ ծածկում են գուլպի թաթ. ձմեռ մորթի փափախ. վարդապետները միայն եկեղեցի գալիս դնում են վեղար, հասարակ կտորից, բոլորն էլ նոյն գդակը տանում են երկու տարին միանգամ: Վարդապետները գիշերի շալից գօտի էին կապում, իսկ մնացածները բանբաշ կտորից: Ամէն մէկուն տրւում էր մէկական վերարկու կտոր, արխալուխ, շալուար, երեքական շապիկ եւ վարտիք, թաշկինակ կարմիր կամ սեւ գոյնի. երեսը սրբիչ մէկ հատ, ձեռքի սապոն երեք հատ, տարեկան 10 գրւանքա լուացքի սապոն:

Առաւօտեան ժամից յետոյ իւրաքանչիւրը իր սենեակում ուտիք օրերը ուտում էր հաց ու պանիր, պաս օրերին հաց. վեր-

ջերս ակսել են գործ ածել և թէյ։ Ճաշին և երեկոյեան բոլորն էլ սեղանատուն էին գնում. ճաշին միշտ մէկը կարդում էր Հարանց վարքից, Վարք սրբոցից, Սարգիս Շնորհալուց։ Ուտիս օրերը միշտ լինում է խաղողէն, մի անուշ կերակուր բրինձից, ածարից կամ ձաւարից, յաճախ նաև ձուկ. երեկոները պանիր, մածուն կամ թանապուր։ Պաս օրերին ձիթով կամ ընկոյզով կերակուր, երեկոները՝ բանջար, կանաչ լոբի, գետնախնձոր՝ երբեմն ձիթով տապակած կամ ցամաք հաց։

Բացի Մեծ պասից և շաբաթական ու օրական պասերից կար և երկու յիսնակի պաս. մէկը Հոգեգալստեան պասից մինչև Վարդավառ, միւսն էլ աշնան յիսնակի սկզբից մինչև աւագ տօները։ Ծննդեան առաւօտը, Վարդավառին, երբեմն վանահօր տօնին արտակարգ հիւրասիրութիւն էր լինում վանահօր կողմից։ Ամառը երբեմն բաժանում էր միրգ՝ ձմերուկ, սեխ, խաղող. ձմեռը՝ բաժանում էր գինի, Մեծ պասին միաբաններին բաժանում էր ձիթապտուղ 15ական գրուանքայ։

Կային հասարակական աշխատանքներ, որոնց մասնակցում էին բոլորը. օրինակ գարնանը գնում էին Սևանի կղզու դիմացի Գիւնէյի արտերը բանջար քաղելու. այնտեղ մնում էին մի քանի օր. խոտաքաղին գնում էին խոտատեղին կէմ էին ոլորում. դրանից

բերած ցանն ու ցախը կրում էին ներս. չարթուայ մէջ հաւաքւում էին 1—2 անգամ թխուելիք հացի գունդն էին անում. վարդապետները այս բոլոր աշխատանքներին մասնակցելուց ազատ էին, բացի վերակացուից։ Օրուայ մնացած ժամանակը կարդում, գրում, շրջում էին։

Այս սովորութիւններից, կենցաղից եւ ժամերգութիւններից շատ չնչին բան մնաց. Անապատը կորցրել է իր արտաքին հմայքն իսկ. Հայ ժողովրդի կրօնական կեանքը փոխուել է, նրա հետ եւ նոյն կեանքից մի զգալի օջախի՝ Սեւանի ճրագը շատ է աղօտացել։

Զ.

Եկեղեցին իր հոգեւորականութեան հետ իբրեւ մի մեծ ճիւղաւորուած հիմնարկութիւն, որի ձեռքին կային պաշտօնապէս դպրոցները եւ եկեղեցական մեծաքանակ կալուածները, հայ մտաւորների ուշադրութիւնից չէր վրիպի հարկաւ, առաւել եւ թէ՝ եկեղեցու իրաւատէր հասկացուած բարեկարգութեան խնդիրն էր դնում, եւ թէ՝ ռուսական խիստ, երբեմն անխնայ ձեւով հայ հոգեւորականների քննադատում 70ական թւականներից սկսած, երբ ռուսահայ կեանքում սկսւում է մի նոր շրջան — ժանր քաղաքացիական հասկացողութիւնների շրջանը։

Այս պայքարը մանրամասնօրէն նկարա-

դրեյր մէկ կողմ թողնելով, այստեղ յիշեմ այդ ետուն պայքարին մասնակցող Հանգուցեալ Կարապետ Եօզ. Տէր–Մկրտչեանի մի քանի դիտողութիւնները, որոնք բաւական են պատկերացնելու այդ շրջանի մտայինների պահանջքները հոգեւորականներից, եւ հոգեւորականութեան այն վիճակը, որին հասել էր հասարակական ու քաղաքական հանգամանքների շնորհիւ Ժթրդ դարու վերջին քառորդում:

«Հարկաւո՞ր է մեզ քրիստոնէական կրօնք թէ ոչ. բանն ասրի առաջ այդ մասին խօսք լինել չէր կարող. պատասխան մարդիկ քննադատում էին արդի եկեղեցական կեանքը եւ նրա մէջ բազմաթիւ թերութիւններ էին գտնում, ցոյց էին տալիս թերութիւնները ամէն կողմ եւ պախարակում էին այն նպատակը, որ ուղղուին, եւ եկեղեցին կենդանանայ ու կենդանի ազդեցութիւն գործէ: Այսօր հանգամանքները բոլորովին փոխուել են. թերութիւնները ցոյց են տալիս, ոչ թէ ուղղելու համար, այլ որպէս զի ապացուցանեն, թէ եկեղեցին ինքն անպէտք է ու հնացած, եւ այն կրօնը, որ նրա մէջ քարոզւում է, չի համապատասխանում այժմեան կեանքի պահանջներին, այլ իբրեւ մի աւելորդ բեռ ծանրանում է նրա վրայ, ուստի եւ կրթութեան միջոցով պէտք է ժողովրդին ազատել այդ բեռից [20]»:

[20] «Արարատ» 1899. Մայիս, 187 եր.:

Այն կրթութիւնը, որ պահանջւում էին հոգեւորականներից՝ այդ շրջանի գործնական գիտելիքների գիտութիւնն էր. Հոգեւորականը պիտի լինէր գիւղատնտես, բժիշկ, իրաւաբան, որ կարող լինէր գիւղացոց գործնական պահանջները կատարել. բայց Աւետարանին ծանօթ լինելը կարեւոր չէր համարւում ամենեւին. անգամ վնասակար էր համարւում[31]։

Հոգեւորականները դարձել էին այս շրջանում ըստ ամենայնի աշխարհիկ մայիների քարոզներին հետեւող. Հոգեւորականի կոչումն ըմբռնում էին բոլորովին տարբեր, քան եկեղեցու ոգին էր պահանջում, քան աւետարանական սկզբունքն էր թելադրում։ Այդ դրութիւնն է նկարագրում Կ. Վ.-ը «Արարատ»ի 1895 Մարտի համարում «Հոգեւորական ասպարէզը» առաջնորդող հետեւեալ տողերով (երես 78). «Եթէ այսօր մեզանում կարելի է համարւում հոգեւորական լինել առանց ամենատարրական ծանօթութիւններն ունենալու այդ կոչման դրած պարտաւորութիւնների մասին, քրիստոնէական կրօնի եւ ազգային եկեղեցու դաւանութեան մասին. եթէ կան մարդիկ, որ պատրաստ են արժանաւոր հոգեւորական համարել, որ նա ուսում է ունել, ուշադրութեան չդարձնելով նրա բա-

[31] «Արարատ» 1901, Յուլիս–Օգ., 350 եր. տես եւ 1895—1901 «Արարատ»-ների Կ. Վ.-ի յօդուածները։

ռուսական և հեղափոխական կեանքի դանդաղութիւնների վրայ, այս՝ համոզուած մինչև խակ, թէ նա հօգով քրիստոնեայ լինել չէր կարող, թէ նա իր ձեռնարկութեան մամանակ մտքում ծիծաղում էր իր գլխին կարդացուած վճիռների վրայ, թէ նա ուրեմն միայն ձևի համար էր վերադարձու հաղթում՝ այդ արդէն անհեթեթ հեռևանք է ամէնից առաջ այն սխալ համոզման, թէ ամէն անասակ ուսում ընդունակ է կացուցանում մարդոց հոգևոր կոչման համար»:

Մի կողմից ամէն ինչ վայր ի վերոյ քննադատող մտայինները, միւս կողմից որանց համակերպող հեղափոխականութիւն, երրորդ կողմից անտեսական դարգացում, հետզհետէ հայ հեղափոխականութեան և եկեղեցու միջը փոխում են ԺԹ-րդ դարու վերջում. եկեղեցուն դարձնում են ամէնից առաջ հասարակական այլ և այլ ազգայնաքաղաքական նպատակների, և այս Աւետարանի վարդապետութեանը ծառայող: Համեմատեցէք ԺԷ-րդ դարու հայ եկեղեցուն ԺԹ-րդ դարու վերջին քառորդի եկեղեցու հետ և կը տեսնէք թէ երկուսի մէջ տարածութիւնը որքան շատ մեծ է: Եթէ անդամ Աւետարանի տնտապար համակերպում է այս պահանջներին ու դառնում արդէն աշխարհիկ մի վանք, որի նպատակն է հասարակական-հեղափոխական նպատակների ծառայել, պարզ է, որ հասարակական հոսանքը շատ էր ուժեղ, որ թափանցել էր

նոյն իսկ այն կղզին, ուր երբեմն հրեշտա-կակրոն ճգնաւորներն էին ապրում, ուր ա-մէնից ուշ եւ ամէնից դժուար մուտք ունէր աշխարհը եւ աշխարհայինը։

Հասարակական հոսանքների եւ հայ եկեղեցու ու հոգեւորականների փոխյարա-բերութիւնը ու յեղաշրջման պատմութիւնը հասկանալու տեսակէտից Սեւանի անապատը ընդհանուր հետաքրքիր պատմական երեւոյթ է․ որի պատմութեան մէջ երեւում է ժամա-նակի ոգին ու զարգացումը։ Հայ հոգեւո-րականի, աւետարանական քարոզի ու բա-րոյախօս վարդապետի դերից հրաժարուե-լով՝ առաւելապէս ազգային հասարակական ու քաղաքական գործերի նուիրուելու յե-ղաշրջման մէջ դեր է խաղացել եւ 78 թուի ռուս-տաճկական պատերազմից յետոյ Ներ-սէսի 61րդ յօդուածով հրապարակ եկած «Հայկական հարցը»։ Յայտնի է որ 80ական թուականներից սկսած ռուսահայ մամուլն-ները սկսում են տաճկահայ ազատագրական շարժումը հրահրել ու քաղաքական կու-սակցութիւններ առեղծել, որոնք 90ական թուականներին արդէն որոշ կազմակերպու-թիւն ունէին ու գործ էին սկսել։ Արդէն Գա-մառ-Քաթիպան իր ազգային երգերով հայ ժողովրդին քարոզում էր «Բահերով շան սատակ անելու» թշնամուն-տաճկին, բնական էր համարում «խանջարն գլուխ տալը թշնամուն» եւ ազատական գաղա-փարներ քարոզում։ Րաֆֆին իր «Կայծեր-

«Խենթ» վէպերով այդ ազդութիւնը աւելի ևս խորացրեց ու ժողովրդականացրեց, հերոսների մէջ առնելով նաև «սուր կապող», հրացան ունեցող հոգեւորականներին: Րաֆֆու ժողովրդական լինելը 90ական Թուականին յայտնի է եւ այն, Թէ ինչպէս «Երկիր» գնալու անունով համախմբուած էին մեծ ու փոքր, աշակերտ ու ուսուցիչ: Այդ գրական հասարակական հոսանքից անմասն չմնաց եւ հոգեւորականութիւնը. եԹէ ոչ անմիջական գոնէ միջնորդական կենդանի մասնակցութիւն ունենալով ազգային շարժմանը: Արիմեան Հայրիկը իր քարոզներով նոյնպէս ազատագրում էր քարոզում. նրա 90 Թուականներին կաթողիկոսանալը անպայման նպաստեց, որ այդ ազգային-քաղաքական հոսանքը մեծ Թափով Թէ կուսակրօն եւ Թէ աշխարհիկ հոգեւորականուԹեան մէջ մանի: Նրա քարոզները, նրա ազգային-քաղաքական գործիչների հետ յարաբերութիւն պահելը, անշուշտ առանց հետեւանքի չէին անցնում: Ռուս բիւրոկրատիայի հալածանքը — անգամ ճեմարանի խուզարկութիւնը, ղեկավարների մի երեսունին աքսորելը բաւական բնորոշ փաստեր են ցոյց տալիս, որ կրօնական աշխարհահայեացքը տեղի էր տուել ազգայինին եւ հայ հոգեւորականը դարձել էր վերարկուոր աշխարհիկ քարոզիչ, հասարակական գործիչ, ոմանք նաեւ ազատագրական շարժման ծառայ: Հայ հասարակութիւնը կրօ-

նական – ազատական կարգերից անցել էր քաղքենի, մանր բուրժուականին, նրա հետ և եկեղեցին։

Հայ հոգևորականներից կային այդ ժամանակ յարողներ, իսկ ուսուցանողների մէջ Գոլիցինի ձեռնումների ժամանակ, երբ ազգային հասարակական հիմնարկութիւն-ները փակուեցին, շատ երիտասարդներ հայ ազատագրութեան ծառայելու, հայ ժողո-վրդի մասային – ազգային վերածնութեան օժանդակելու համար, հոգևորականի վե-րարկու հագան, քահանայ ձեռնադրուելով կամ վեղար առնելով։ Այսպէս հետա-քրքրողը եկեղեցին ու իր պաշտամունքը, Աւետարանի քարոզութիւնը չէր այնքան, այլ վերարկուի տակ հասարակական–ազ-գային և յեղափոխական գործին ծա-ռայելը[32]։

Նման պայմաններում, երբ հայ եկե-ղեցու պաշտօնեան անգամ, հայ եկեղեցու աւանդական ձևերը չգիտէր, երբ նրան չէր զբաղեցնում կրօնն ու պաշտամունքը, բնա-կան է, որ Աւանի անտարբեր ղերծ չմնար այդ եղելութիւնից, մանաւանդ, որ նրա

[32] Ներկայ կաթողիկոսին երկու քահանայ խնդիր տուին 1920 Յուլիս–Սեպտ. ամիսներին և խնդրեցին իրենց հոգևոր կոչումից ազատել, որով-հետև իրենք վերարկու էին հագել յեղափոխու-թեան, հայ ժողովրդի ազատագրութեան ծառայե-լու. այժմ երբ Հայաստան ազատ քաղաքական կազ-մակերպութիւն ունի, իրենք իրենց հոգևոր կոչումն աւելորդ են համարում։ Ահա բնորոշ փաստեր։

հոգեւորութիւնը յանձնուած էր Սինոդին ու Երեւանի առաջնորդին, որոնց պաշտօնատար անձինք էջմիածնի բարձր հոգեւորականութիւնից էին լինում, գրեթէ նոյնպիսի աշխարհայեացքով, ինչպէս էին եւ դրան պահանջները: Սեւանի միաբան էին դառնում ռուսահայ անհատներ, որոնք այդ միջավայրերից էին եկնում, ուստի զարմանալի չէ, որ ԺԹ-րդ դարու վերջի Սեւանայ անապատի միաբանն էլ հասարակական գործիչ դառնար, եւ որ եւ է շրջանի կոմիտէի նախագահ: Սա բնական արտայայտութիւնն էր հայ եկեղեցու ժամանակի վիճակի: Ազգային—հասարակական գործին ծառայելը՝ դարձել էր միակ նպատակը, ուստի եւ կրօնը, եկեղեցին իր պաշտամունքով մոռացութեան էր տրւում ու հեռահեռէ թուլանում ու աղաւաղւում էր: Այդ ազդեցութիւնը այժմ, երբ հայ ժողովուրդը առացել է իր քաղաքական անկախութիւնը, եւ հայ հոգեւորականը՝ այլ եւս դրան պետական ճնշումներից դրդուած՝ կարիք չունի քաղաքական—հասարակական գործիչ լինելու, աւելի ցայտուն է երեւում: Հայ եկեղեցու այժմեան հոգեւորականութեան առաջաւոր տարրին Սեւանաբանի եկեղեցական կրօնական բարոյական վարդապետութիւնը շատ քիչ բան է տալում. նա իր բուն կոչումով չի ոգեւորում, անցեալ ժամանակաւոր կոչումից էլ զրկուել է ու մնացել է ո՛չ միս եւ ո՛չ ձուկ, այլ խեղճ ու երերուն, որա նրա

ձեռքին նայող։ Հասարակական հոսանքների թելադրանքի հետեւանք էր նաեւ այդ դրութիւնը։

Այդ հասարակական հոսանքն էր, որ եւ Սեւանայ բարոյական ճգնութեան տարինարան անապատը դարձրեց վերջ ի վերջոյ մի ամփոփական ուխտատեղի, ուր գնում են մարդիկ զուարճանալու, հաճելի ժամանցի, եւ ոչ թէ բարոյական զգացման ու կրօնական ապրումների։ Ով մտել է ի. դարու սկզբի Սեւանը — նա կը տեսնէր կանոնաւոր մարդոց կառուցուած սենեակներ, բաղկաթոռներ, գահաւորակներ, դանակ, պատառաքաղ, մահճակալներ փափուկ անկողիններով, զարդարուն սենեակ, ծաղիկներ ու տուալէտի զարդարանքներ, խմիչքներ յու սեղանի եւ այլն։ Եւ ի՞նչ զարմանք, որ անապատ կոչուող մենաստանի միաբանները վայելում են ո՛չ միայն բոլոր աշխարհային բարիքը անվերապահօրէն, այլ եւ զուարճանում աշխարհականների վայելչ ժամանցներով ու խաղերով։ Եթէ այս կենցաղը գայթակղութեան առիթ չէ տալիս ժողովրդին, եթէ անապատ եկող գիւղացին իսկ զուարճացել է անապատի միաբանի հետ, իսկ մտաւորականը ուրախացել եւ երգել, պարել ու զուարճացել անապատականի հետ, ապա այդ այն պատճառով, որ ժողովուրդ վաղուց էր յեղաշրջուել ու նրա համար այլ եւս կրօնական կեանքը, քուրձ հագած անապատական ճգնաւորը, ոչ միայն

կարեւոր չէր, ոչ միայն դանէ հետաքրքրութիւն չէր զարթեցնում, այլ նրան թւում էր անտարբերնիզմ, անկարգ ու անտեղի։ Եւ հատնքի հետ չափւող անկազմակերպ, անդոյն հոգեւորականութեան հետ Սեւանն էլ կնքեց իւր անապատական կեանքը վերջ դնելով իւր բուն նպատակի ծառայութեանը ԺԹ. դարու վերջերին եւ Ի. սկզբներին։

## Է.

Սեւանի մենաստանի կենցաղը Տօական թուականներին դրեթէ ոչինչ փոփոխութիւն չի կրում. դրսի շարժումները կարծես նրա վրայ խոշոր ազդեցութիւն չեն անում. միաբանութիւնը իւր ցորեն ու պարենն է աշխատում խաղաղ, ու դրանով էլ գոհանում է։ Այդ անշարժութիւնն իսկ բնականաբար մենաստանի յառաջադիմութեան ու հադհեալ տարրալուծման է նպաստում. աննկատելիօրէն միաբանական կեանքը ենթարկւում է ընդարմացման, ուրեմն եւ հիւանդութեան, որը բուժել չէր կարելի այլ եւս։

Թէ ո՛ր աստիճանի հայ վանականի, անդամ անապատականի աշխարհի ու ապաշխանի գիտակցութեան մէջ յեղաշրջւում էր կատարուել դէպի նիւթապաշտականը, ո՛րքան նրա մէջ բուն էր դրել անհարազատ վերաբերմունքը այդ թուերին, երեւում է Սինոդի 87 թուի 30 Դեկտ. Թիւ 5188 շրջաբերական գրութիւնից ուղղուած վանքերին, որ ա–

տած է, որ վանահայրերը անհոգ են եղել իրենց պարտականութիւնը կատարելու նկատմամբ, վանքապատկան գոյքերը եւ արդիւնքները իրենց հաճոյքին համար ծախսում են[33], կալուածները կառավարում են անփոյթ եղանակով, եւ փոխանակ արդիւնաւորելու վնաս են բերում, ուստի Սինոդը հրահանգում է. «1. Առանց Սինոդի թոյլտւութեան մասունք չպատեցնել գիւղերը եւ արդիւնքը ծախսել ուզածին պէտք: 2. Ծարմական կայքը՝ գրքեր, ձեռագրեր, զարդ, անօթ չվաճառել առանց Սինոդի թոյլտւութեան: 3. Ուսումնի գրամօտ ունեցող գիւղերից բահրան լաւ հաւաքել, իսկ չունեցողների բահրան աճուրդով չտալ, այլ անձամբ, հաստատուն մարդոց ձեռքով հաւաքել: 4. Հողը որքան կարելի է անձամբ մշակել, իսկ թէ չէ՝ տալ կապալով: 5. Նոյնպէս եւ վանքապատկան տունը, կրպակը, այգեստանը: 6. Անտառը տալ կապալով: 7. Արգելւում է վանքապատկան հողերը օտարացնել: 8. Ամէն տարի վանքի գոյքի ցուցակն ուղարկել Սինոդ»:

Ուշադրաւ է շրջաբերականը նրանով, որ հոգեւոր իշխանութեան բարձր հիմնարկութիւնը ինքն ընդունում է, թէ վանահայրերը անձնական հաճոյքի են հետեւում, ու այն էլ որբացած մասունքներ պատեցնում գիւղերը յօդուտ իրենց: Սա մի բա-

33 Ընդգծումներն իմն են:

րոյական սնանկութիւն է, որը խոստովանում է իշխանութիւնը. մի անպատուաբեր իրողութիւն, որից պարզ է, թէ 80ական—90ական թուականների վանքերը եւ մենաստանները դարձել էին շահագործման վայրեր, որ հեռացել էր իսպառ նրանց միջից կրօնական կեանքը, ուսումը եւ բարոյական կենցաղավարութիւնը։ Նման վիճակը հարկաւ անկման պիտի տանէր ու այսօր. փաստը մեր աչքի առաջ է. չքնացել է ռուսահայ հատուածը եւ հանգած, մարած վանքեր կը տեսնենք միայն։

90ական թուականներին սկսւում է մի շարժում, Մկրտիչ Ա. կաթողիկոսի օրով, որը յատուկ ուշադրութիւն է դարձնում Մենաստանի վրայ, բազմիցս այցելելով, աշխատում է ընդարձակացման առաջ տանել։ Նրան այս խնդրում յարմար աշխատակից լինում է Ն. Բայազէտի երկար տարիներ ուսուցչութիւն արած Սարգիս Փիլոյեանը, որին 1896 թուից նշանակում է վանահայր Մենաստանի եւ որի ձեռքով վանքում մի քանի ձեռնարկութիւններ է անում, անշնչացող մարմինին կրկին շունչ տալու։ Սարգիս Վ.-ր, 1901 թուից եպիսկոպոս[34], լինում է հոգեվարքի վերջին ուժեղ շնչառութիւնը, անկայծող ճրագի պլպլացող լոյսը, որը

[34] Վախճանուել է 1915ին եւ թաղուել նոյն Մենաստանի հարաւային պատի մօտ. գերեզմանաքար ցայսօր չկայ այդ վաստակաւոր վանահօր գերեզմանի վրայ։

մխանդամ իւր կենցաղով, համեստ վարքու-թարքով, աշխատում է մենաստանում անապատականի վայել կենցաղ մանցել, կարգ ու կանոն, առկայն ո՛չ ժամանակի ոգին էր նպաստում նրան, ո՛չ շրջապատը եւ ո՛չ ինքը ունէր այն ուժեղ կամքը ու հոգու այն հզօր ազդեցութիւնը, որ կարողանար մարող խարոյկը կրկին վառել ու անհետացող անապատը փրկել, պատմական–հասարակական ճակատագրական վճռից: Սարգիս Վ.-ը եղաւ ռուսահայ անապատական կեանքի վերջին համեստ թոյլ առկայծող լոյսը, որ եւ մարեց, հանգաւ, վերջացաւ: Ն. Բայազէտի նահապետական միջավայրում ապրած, նոյն եւ Մազկածորի շրջանների հայ գիւղերում քսանեւհինգ տարի ուսուցչութիւն արած այդ համեստ եւ կրօնական տրամադրութեան տէր անձը, որը գրեթէ ամէն ամառ երեք ամիս Սեւանում էր անցկացրել իր կեանքը, ինչպէս իր խնդրում ասում է «անդամին ի մանկութենէ անրով վառեալ կուսակրօնութեան» 1895 թ. Օգ. 15ին հայ գաղթականները փախուելու շրջանում Սեւան է մտում, ինչպէս եւ այլ ուսուցիչներ էջմիածնի միաբան են դառնում: Դա մի հասանք էր, որին ծնունդ տուողը եւ խրախուսողը Գոլիցինի հայահալած քաղաքականութիւնն էր:

Ահա Մկրտիչ Ա.ի 1896 թ. Ապրիլ 11ին թ. 521 կոնդակը, որով վանահայր է նշանակում Սարգիս Վ. Փիրոյեանին:

«Սրբակրօն հարց միաբանից Ս. Անապատին Սեւանայ, մայրավանիս վարդապետաց, ընդհանուրակ աբեղայից, դպրաց եւ կղերիկոսաց եւ աղօթասէր քրձազգեաց մահանեանց, հարազատից Մայր Աթոռոյս, ողջոյն ու հայրապետական օրհնութիւն:

Շնորհք, սէր եւ խաղաղութիւն, Ամենասուրբ Երրորդութեան իջցէ եւ հանգիցէ ի վերայ համայն գումարելոցդ եւ ողորմութիւն աստուածային հեղցի ի վերայ սրբոյ Տանդ, յորում արծուիքդ մշտամռունչ աղօթիւք, իբրեւ զանմարմինն փառաբանելով զանուն Տեառն զօրութեանց. Ամէն:

Ընդ առաքմանդ ողջունի եւ հայրապետական օրհնութեան յայս անձնամբ, զի մինն ի բազմահոգ մտածմանց մերոց եւ ջանից է, պայծառացուցանել զբազմադարեան սրբավայրս մեր եւ հանել զնոսա յարգի անմխիթար գրութենէ, յորոց ոմանք հայիւ եւեթ ունին զմի վանահայր, եւ զերկուս եւ զերիս միաբանեայս: Էր երբեմն զի վանօրայք մեր յիւրաքանչիւր գաւառի փայլէին իբրեւ լուսաւոր ջահք, ճառագայթեալք ընդ ամենայն տեղիս զճշմարիտ լոյս քարոզութեան բանին կենաց, ընդ ձեռն աստուածաբան վարդապետաց, հոգեշնորհ թարգմանչաց եւ գրասէր հարց վանականութեան, որոց ջան եւ գործ էր շինել պատուական այգի եւ եկեղեցւոյ, ի փոխարէն որոց եւ նորոգութեանց, զորս ընդունէին ի ջերմեռանդ ուխտաց եւ ի հաւատաւոր ժողովրդոց

Հայաստան երկրին։ Դիտէք իւրաքանչիւր ի ձէնջ զանցիցն անցելոցն Ս. Անապատիդ եւ զպատմութիւնն, թէ յորում ժամանակի եւ ոյր ձեռամբ հիմնեալ եւ հաստատեալ է, որպէս եւ զհաղեկեցոյցն շնորհաց, որովք մխիթարեալ է զմտադիւրականս եւ զոհ կացուցեալ. ապաքէն եւ Մեզ ամենեցունց պարտիք ի վերայ կան ընթանալ չաւզոք երանաշնորհ հարցն մերոց, օրինակ մեզ ունելով զերանելի վարս նոցին եւ զանձնուէրութիւն եւ որպէս նոքա մեզ աւանդեցին զնոյն եւ Մեք Մեզ յաջորդացն։

Որ ցանկայցէ ի վայելչութեան տեսանել եւ ի փառաւորութիւն հաւուցանել զայդ աստուածապաշտ Մենաստանդ, խնդրելով զօժանդակութիւն Մեր, առհասարակ բախնդրանացդ Ձերոց եւ ցանկութեան, որպէս եւ հաճութեամբ Տէր Գրիգոր վարդապետի[35] զորմէ յայտնեմք զգոհունակութիւն Մեր եւ զշնորհակալիս եռուք ձեռնադրել յաստիճան կուսակրօն քահանայութեան եւ վերածեալ յաստիճան վարդապետութեան զՏ. Սարգիս բարեշնորհ վարժապետն Փիլոյեան, կարգեմք զնա այսօր Վանահայր վանացդ, այր պարկեշտ եւ խոնարհ, այր ժուժկալ եւ բարեբարոյ, այր ըստ ցանկութեան սրտի Ձերոյ, որ գիտէ ունել զխաղաղութիւն ընդ ամենեսեան եւ հոգալ զամե-

[35] Սարգիս Վ. Փիլոյեանեց առաջ եղեր վանահայրն է, ազգով քուրդ, մկրտած եւ մխարան գրուած Սեւանայ վանքում։

նեցունց ըստ պատուոյ եւ աստիճանի։ Այսպ եւ Ձեզ հարցդ միանձանցդ եւ եղբարց միաբանելոցդ, պարտ է Ձեզ անկեղծ լինել եւ հպատակ կալ ընդ իշխանութեամբ նորին, օժանդակ լինել նմա ի ձեռն իւր եւ ի գործս, որ հայի յօգուտ եւ ի շինութիւն Ս. Տանդ։ Մի որ ի Ձէնջ ըմբոստ եւ խռովարար, մի՛ բանսարկու մի զմիոջէ, մի՛ թշնամանող զմիմեանս, մի՛ ծոյլ եւ պղերգ հանապազօրեայ աղօթից եւ պաշտամանց, այլ հեզ, խոնարհ, ժուժկալ, արի ի պաշտամունս, սիրող աղօթից եւ ընթերցուածոց, կալ սիրով եւ խաղաղութեամբ ընդ միմեանս, զի սէրն Աստուծոյ ի Ձեզ բնակեսցի։

Յուսամք զի նորընտիր վանահայրն Ձեր Տ. Սարգիս վարդապետն՝ ունի լիովին արդարացուցանել զյոյսն Ձեր իւրով հեզահամբոյր, բարի եւ աստուածահաճոյ գործովք, եւ զհետ լինել բարեկարգութեան Ս. Ուխտիդ։ Եւ մեք աղաչեմք զԱստուած, շնորհել հաստատութիւն սուրբ տանդ եւ միաբանութեանդ, պարգեւել Ձեզ զհոգի իմաստութեան եւ երկիւղի, զհոգի գիտութեան եւ աստուածպաշտութեան, զհոգի հեզութեան եւ համբերութեան։ Օրհնութիւն աստուածային իջցէ ի վերայ մեծացդ եւ փոքունցդ, ծերոցդ եւ երիտասարդացդ։ Օրհնեսցէ Տէր զնախորդ վանահայրն Ձեր զՏ. Գրիգոր վարդապետն, որ բազում վաստակեաց վասն Ձեր եւ վասն Ս. Տանդ, տացէ նմա Աստուած վարձս բազում վաստա-

կոյ իւրոց, զՁեզ զամենեսեան արժանիս արասցէ անճառելի շնորհաց եւ երկնային մխիթարութեան աստ եւ ի հանդերձելումն։

Մնայ եւ Ձեզ լինել գոհաբան զՏեառնէ եւ աղօթել մաքուր մտօք վասն աշխարհիս խաղաղութեան, եկեղեցւոյ հաստատութեան, նեղելոց անդորրութեան եւ մերոյ Թշուառացելոյ ազգի յաւէտ եւ անսասան պայծառութեան եւ ազատութեան։ Շնորհք Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի լիցի ի վերայ ամենեցունց. ամէն»։

Կոնդակից երեւում է, որ միաբանութեան կենցաղը վանականին վայել սահմանուած չէ, որ կան նրան մէջ ամբողջական մարդկանց համար խիստ անթոյլատրելի արարքներ, ուր մնաց անապատականներին, ուստի եւ վանահայր Սարգիս Վ.-ը 96 թուին մի հրահանգ է ուղղում միաբաններին կենցաղի վերաբերեալ։ Վանահայրն արգելում է ծեծը, հայհոյանքը, կռիւը, ստապականի առաջ անզգոյշ երեւալը։ Եթէ մէկի խրատանքը բանտարգելում է կամ մէկին անպատուում է, պէտք է դնայ վանահօրը, յայտնէ իր տրտունջը եւ բաւարարութիւն ստանայ։ Վանահօր մօտ գտնուող առանձին մատեանում գրիսի արձանագրուի եկեղեցի եկողի եւ չեկողի անունը, կռուարարների եւ համբերողների անունը, վանական կարգերին հնազանդողները եւ չհնազանդողները եւ հաւատարիմների ու անհաւատարիմներին, որպէս զի մանրամասն հաշիւ կարդ-

մուխ, թէ ո՞վ դրանցից տարուայ մէջ քանի՞ անգամ եղբայրներին ծեծել է, հայհոյել է, կռիւ է արել, անհնազանդ ու անհաւատարիմ է եղել. ով, քանի՞ անգամ անառակից կերակրի նիւթ է ստացել: Այդ ամէնը տարւայ վերջը միաբանութեան առաջ կը կարդացուի, որ քաղքին էլ իմանան:

Այս հրահանգից պարզ երեւում է, թէ ի՞նչ վիճակ ունէր միաբանութիւնը. ի՞նչ զբաղմունք, վարք ու բարք: Ահա ԺԹ. դարու վերջի ծեծող, հայհոյող, անհաւատարիմ միաբանք, որը շատ էր հեռացել ԺԹ. դարու ոգուց հրեշտակական, բարի հեղ միաբանից: Տղէր, անտախտապաշտ էին միաբանները, ու կզզու մենութեան մէջ պարապութիւնից առաջացած անհատական մանր մանր դժուծ հաշիւների մէջ խճողուելով իրար թշնամանում են. պղտոյ սնանկանում, առաւօտի պաշտամունքին նուիրում. մինչեւ իսկ իրենց համար ձեւի, անշուշտ եւ անկենդան ծէսի փոխուած ժամ գնալու մէջ իսկ թերանում են, ծուլանում:

Նման վիճակ ունէր եւ Սեւանի շրջապատի ժողովուրդը, գլխաւորապէս Մազկաձորի եւ Գեղարքունեաց շրջանի, որոնց համար Մկրտիչ Ա.-ը յատուկ կոնդակ է տալիս[36], որ Սեւան եկող ուխտաւորները ոչ թէ յիրաւի ուխտի են գալիս, երկրպագութեան սուրբ տեղին ու նշանին հոգեւոր

[36] 1903 թ. Յուլիս 10 թ. 822:

մխիթարութեան, այլ «հատուել վասն մարմնաւոր զուարճութեան»: Ուխտաւորները ծանրանում էին վանքի վրայ, պղնձեղէն, վառելիք, լոյս եւ այլ յարմարութիւններ պահանջելով: Այդ բաւական չէր, նրանք շինութեան այս ու այն մասերը փչացնում էին, նորակառոյց զանգակի յատակի վրայ կրակ էին վառում. ոչխար մորթում ատնեկում ու պառկանում: Ուստի եւ կաթողիկոսը յորդորում է լինել վայելուչ, պատկառով, խնամքով վարուել վանքի սեփականութեան հետ:

Ժողովուրդը՝ ինչպէս վերը նկարագրեցի, այլեւս դէպի կրօնը ու եկեղեցին դարձել էր անտարբեր եւ աւելի շատ թշնամական վերաբերմունք ունէր: Բնականաբար չկար պատկառանք, յարգանք ու նուիրաբերութիւն այնպէս, ինչպէս այդ կար ԺԹ. դարու սկզբում: Միաբանութիւնը ժողովուրդին հաւասար դրութեան մէջ էր եւ ոչ բարձր. բնականաբար բարոյական, կրօնական ազդեցութիւն չունէր:

Տգէտ միաբաններին թիւը պակասցնելու, միաբանութեան վիճակը բարելաւելու համար հարկաւոր էր համարուել ժամանակի պահանջներին համաձայն Սեւանում եւս մի դպրոց բանալ եւ կրթել միաբաններին: Քանի որ քահանայական խնդիրը այդ ժամանակներում հրատապ էր եւ ընծայարան (քահանայացուներ պատրաստելու դպրոց) բանալու կարիքն էր շեշտւում,

Մկրտիչ Ա. կաթողիկոսը ձեռնարկեց մի ընծայարան բանալու Սեւանում, որտեղ թէ՛ Սեւանի միաբանները կարող կը լինէին կրթուել, թէ՛ դրսից եկած գեղական քահանայացուները պատրաստուել:

Առաջին անգամ չէր Սեւանում դպրոց բանալու ձեռնարկութիւնը: Դեռ 1869ին Մեսրոպ Վ. Սմբատեանը՝ երբ փոխ թեմակալ էր Երեւանի եւ Սեւանի մենաստանը մտել էր իւր իշխանութեան տակ ու ծանօթացել էր մենաստանի միաբանների գիտութեան չափին, որ աղէտ էր, դիմել էր Գէորգ Դ.-ին եւ խնդրել թոյլ տալ բանալ Սեւանում վանական դպրոց: Կաթողիկոսը իբրեւ ուսումնասէր հայրապետ թոյլ է տալիս եւ օրհնում 1869 թ. Սեպտ. 18ին հրահանգում է բանալ դպրոցը: Բացուա՞ծ է արդեօք դպրոցը, թէ ոչ. ի՞նչ ծրագիր է լինում, ո՞վքեր են դասաւանդում եւ ի՞նչ արդիւնք է ունենում: Անապատի դիւանից չի երեւում ոչ ինչ: Ըստ երեւոյթին եթէ բացուել էլ է, երկարատեւ չի լինում նրա գոյութիւնը ու միաբանութեան կեանքում կարեւոր դեր չի խաղում: Հետագայ տարիների կեանքը ցոյց է տալիս, որ միաբանները նոյն վիճակն են ունեցել, ինչ որ կար, նոր սերունդ չի երեւում միաբանութեան մէջ, չկայ հնի եւ նորի ընդհարման խնդիր: Անապատը անշարժութեան է մատնուած իր ներքին կեանքում:

Ղարաբաղցի Ալեքսի Ղուկասեանի

ծախքով շինուած է Սարգիս Վ․ի վանահայրութեան օրօք 1897—1898 թուերին մի յարկանի ընծայարան։ Մի շէնք որի նմանը Սեւանի անապատը չէր տեսել․ շինուած ընդարձակ լուսամուտներով, բարձր, լուսաւոր սենեակներով, ներկած պատերով, մի խօսքով մի վայելուչ շէնք։ Այս շէնքը ասիթ է դառնում, որ միաբանները այնուհետեւ պահանջ դնեն աւելի լաւ խցերի, քան իրենց նեղլիկ, մութ, խոնաւ խցերն էին․ Եւ վանահայր Սարգիս Վ․ի անխոնջ աշխատութեամբ ու հսկողութեամբ շինարարական մի ընդարձակ գործ է սկսում Սեւանում որը տեւում է 15 տարի, մինչեւ 1907 թիւը․ Հետզհետէ մենաստանում շինուած են նորանոր շէնքեր, այնպէս որ այժմեան այցելուն կը տեսնէ միայն նրա վանահայրութեան օրօք շինուած շէնքեր։ Բացի վանքերի շէնքից մնացածները նոր են եւ աւելի յարմար ու այսպէս ասած՝ «նոր, մաքուր» միաբանների ճաշակին յարմար։ 1900—1901ին շինուած է վանահօր կացարանը Մովսէս Բարսեղեանի ծախքով։ 1899—1910 հիւրանոցը, մառանը, մի խումբ Բալուցիների նուէրներով։ 1903ին Ս․ Աստուածածին եկեղեցու զանգակատունը։ 1907ին ուխտաւորների եւ միաբանների կացարանները։ Այս վերջինները առաւելապէս վանքի, մասամբ մի քանի մասնաւոր անհատների միջոցներով։

Բոլոր շէնքերի վրայ կար կնիք, նոր կուլտուրական շրջանի, դէպի փափկակե-

ցութիւնը, համդիստ կեանքը ու որոշ չափով անձնական բաւականութիւնը: Այս շէնքերին նայողը եւ համեմատողը հին խցերի մնացորդների հետ, որոնք կղզու վրայ կան, պարզ տեսնում է հայ մտքի, հայ մարդու, նրա հետ եւ հայ Վանականի փոփոխութիւնը, որ մի դարւայ ընթացքում տեղի ունեցաւ ռուսահայ հատուածում: Կրօնական կեանքի անկում, անհատականի զարգացում ու պահանջմունք, մանր բուրժուական–քաղքենի մտայնութիւն, եւ նոյն պզով շաղախուած գրականութիւն եւ աշխարհայեացք, ինչպէս ամէն տեղ, այնպէս էլ հայ եկեղեցում:

Ոչ ընծայարանը, որ մի երկու երեք տարի միայն գործեց, ոչ վանահօր եռանդուն շինարարական աշխատանքը, ոչ նոր շէնքերը ու յարմարութիւնները չկարողացան Սեւանի մենաստանի միաբանութիւնը վերածննդեան դրդել: Այդ միջոցները կիսատ էին ու մանաւանդ անզօր պատմական–հասարակական շարժման համեմատութեամբ: Հասարակական տրամադրութիւն ունէր, քաղաքական աշխարհում ազատագրական շարժումներ արմատանում, անհատական կեանքը դէպի արդիւնաբերութիւն էր դնում: Այսքան ուժեղ հոսանքների հակեայ հայ խեղճ ընծայարանը, քարոզն ու գիրքը անզօր էին, եւ Սեւանայ անապատը մէկն էր այն բազմաթիւ երեւոյթներից, որոնք դատապար-

տուած էին Թողնելու խապատ հինր։ Եւ միաբանութիւնը թողեց հինը, նորին մանակից չեղաւ, այլ աւելի շատ վայրիվերոյ ծանօթանալով այս ու այն գիտութեան ատանայների հետ շփոթուեց, դարձաւ երերուն, անկայուն, նա այլ եւս անապատական չէր. եւ ոչ էլ անապատի կարգը ըմբռնող։ Այդ վիճակն ի նկատի ունենալով Խրիմեան կաթողիկոսը 1901ին կարծես իբր վերջաբան Սեւանի ԺԹ. դարու պատմական յեղաշրջման՝ անապատից վանքի վերածուելը եւ այն էլ շատ աշխարհիկ կարգերով այդքան միաբանութեան տուեց հետեւեալ կոնդակը, որով անապատի միակ մնացորդը, ԺԹ. դարու ժամերգութիւնը կրճատուեց եւ Սեւանն իբր անապատ վերջացաւ քսաներորդ դարու սկզբին։

Կոնդակը տրուած է 1901. Յունուար 1ին Թ. 1 Սեւանում։

«Հոգեշնորհ վանահօր վանաց Սեւանայ Տ. Սարգիս վարդապետի եւ համայն աղօթարար միաբանական հօրց եւ եղբարց ողջունիւ յայտ առնեմք».

«Ոչ միայն ինձ, այլ եւ համայն ազգին եւ ժողովրդեան փափագն այն է, որ ոչ միայն աղօթարար միաբանք ըստ հնաւանդ սովորութեան տիւ եւ գիշեր երկարապաշտօն տքնութեամբ պարապեսցին, այլ եւ եկեղեցական ուսմամբ եւ աստուածային գրոց հմտութեամբ եւ ազգային կարեւոր պատմութեամբ զարգանան եւ բարգաւաճին

առ ի շինութիւն ոչ միայն անձանց իւրեանց, այլ և ի շինութիւն ներկայ դարուս առաջադիմելու և քաղաքակրթուելու ազգիս համար: Ասոր համար բարեպաշտ և ուսումնասէր Աւետիս Ղուկասեան այն կղզւոյն մէջ կառոյց մի հոյակապ ընծայարան, որպէս զի անմխիթար գիւղական ժողովուրդին համար շնորհալի և ուսեալ քահանաներ պատրաստուին: Բայց Սեւանայ Վանուց ժամակարգութեան կարգն այնքան ընդարձակ է, որ չի թողուր ժառանգաւոր աշակերտաց ուսման պարապելու: Եւ որովհետեւ Սեւանայ վանուց այժմեան միաբանական դասն յոյժ նուազած է, ասոր համար ուսման աշակերտաց տիրացուք պարտաւորեալ են սաղմոսերգութեան կարգ վարել, որով կարճի յոյժ ժամանակ ուսման և թերավարժ մնալով չկարեն արժանապէս քահանայական սուրբ կոչումն ընդունիլ, որով լինին պատճառ այնչափ քննադատական մեղադրանաց, և գիտէ՞ք, զո՞վ դնեն պատճառ վասն աղքատութեան քահանայից — ազգին Հայրապետը, Թեմական առաջնորդները և մանաւանդ վանահայրերը. յորոց շատք իրենց բուն պաշտօն թողած միայն աղարակապետութեան պաշտօն վարեն չար մշակ լինելով նիւթական պիտոյից համար: Ահա այս ամէն զիս պատճառ կացուցանեն բարեփոխել ժամակարգութեան պաշտօնն Սեւանայ վանուց:

Ա. Հինգ կանոն Սաղմոսն զեղչել երեք կանոն, զոր պաշտել եւ սաղմոսել պէտք է մի կանոն առաւօտեան կանոնագլխէն առաջ եւ մի կանոն ճաշու ժամէն առաջ եւ ճաշու ժամն առանց մեծ քարոզից եւ աղօթից, որ պաշտի միայն ի մեծի պահոց:

Բ. Հարցի շարականները ըստ հին սովորութեան չկրկնել երեք անգամ, այլ միմիայն մի անգամ:

Գ. Փոխեր մինչեւ վերջին տուն չասել, այլ երկու եւ երեք տուն ասելէն յետոյ սկսել պատշաճի շարականն:

Դ. Արեւագալի ժամերգութիւն միայն մեծ պահոց պաշտել:

Ե. Պահոց օրեր խաղաղական ժամ պէտք է անփոփոխ մնայ ըստ կարգին:

Զ. Նոյնպէս գիշերապահու Եկեսցէն պէտք է մնայ:

Այս չափս բաւ համարիմ եկեղեցւոյ ժամակարգութեան մասին, զոր սահմանեալ են երանելի նախնիքն մեր եւ զոր ցուցանէ մեզ տօնացոյցին կարգ, որում հետեւին ամենայն եկեղեցիքս Հայաստանեայց եւ վաւերական համարեալ են ի բազում դարուց անտի եւ անփոփոխ մնացեալ հասեալ ի մեր ժամանակս:

Այս այսպէս յորդորելով Հայրապետական կոնդակաւ պարտաւոր կացուցանեմ նախ բարեկարգութեան նախանձաւոր Տ. Սարգիս Վ., որոյ ժրաջան հոգածու աշխա–

տութիւնը, հանդերձ աշխատակից միաբան եղբարց օգնականութեամբ կարգադրման այսչափ շինուածոց կառուցման յառաջ տանիլ, որոյ փառքն եւ պատիւ հասարակ է բոլոր միաբանական դասուն: Նմանապէս պարտաւոր կացուցանեմ Սեւանայ վանաց համայն միաբանութիւնն յօժարաբար հոգալ հպատակիլ այն կարգադրութեան եւ վարել ըստ այնմ ի նոր տարւոյս սկզբէն:

Եթէ ոմանք դժկամակ լինին եւ յուշ ածեմ նոցա Քրիստոսի բան, որ պատուէր ետ մեզ չլինել բազմախնդիր յաղօթելն մեր, իբրեւ հեթանոսք, զի գիտէ Հայրն Ձեր, թէ զինչ պիտոյ է Ձեզ եւ աստի նիւթ առնելով Մանդակունի Ս. Հայրապետն որչափ գեղեցիկ յօրինեալ է զխնդրուածս աղօթից «Տէր, դու գիտես զպէտս եւ զկարիս մեր առաւել քան զոր խնդրեմք եւ իմանամք»: Ամենայն ուշադրութեան արժանի է Եզնկայ վարդապետի խրատ, զոր ուղղէ առ միանձունս, «բերանք մեր հանեալ են ի պահոց եւ լեզուք մեր ընդարմացեալ ի սաղմոսերգութիւն եւ զոր Աստուած խնդրէ զայն ոչ ունիմք, այն է սէր եւ միաբանական եղբայրասիրութիւն»: Աստի յայտնի է, թէ ի ժամանակս իւր կային վանական միաբանք եւ միանձունք, որք թողեալ զմիաբանական սիրոյ սուրբ պատուէր, անբան արբութեամբ յաճախէին յաղօթս եւ մերթ եւս պարծենային ի վերայ միմեանց իբրեւ առաւել հանդիսացեալ ի հոգեւորական վարս:

Եւ ես աղօթեմ վասն ձեր եւ դուք վասն իմ առ ի չլինել մեզ առանց սիրոյ աղօթարար։ Այլ առաւել ունել սէր եւ սիրել եղբարց առանց երբեք կեղծաւորութեան։ Գլուխ ամենայն պատուիրանաց սէր է, զոր աւանդէ մեզ սուրբ Աւետարան։

Երանելի լինիմք եթէ սիրով պահելով զայս տէրունի սրբազան պատուէր, զկեանս վարեսցուք այնպէս, որպէս հաճոյ է առաջի Տեառն, քան զպատարագ եւ զզոհ։ Մաղթեմ զի վանական ուխտ Սեւանայ ունելով ժամանակ պարապոյ, այսուհետեւ ոչ միայն կրթեսցէ զանձն իւր յաստուածպաշտութիւն, այլ ընդարձակեսցէ ընդ այն զուսումն եւ զկրթութիւն, որով միայն փառաւորի նա յԱստուծոյ եւ ի մարդկանէ։

Շնորհատուն Աստուած տացէ Ձեզ շնորհ, զի դուք կարող լինիջիք հետզհետէ ի լաւ անդր յառաջադիմել եւ զովելի անուամբ հռչակել զուխտն Սեւանայ վանաց, ուր երբեմն Մաշտոց վարդապետ հանդիսացեալ էր իմաստութեամբ եւ գիտութեամբ։ Եթէ դուք համարիք զայն պարծանք Սեւանայ վանաց, ուրեմն նախանձաւոր եւ հետեւող լերուք շնորհաց նորին։ Շնորհք Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի ընդ Ձեզ ընդ ամենեսինդ»։

Սեւանայ մենաստանի հիմնադրի՝ Մաշտոց խնկելի հայրապետի յուշիւ օրինակով է կնքում Հայրիկը իւր կոնդակը. ստ-

ման ու աղօթքի անձնման մխացումով մենաստանը վերածնելու քաղաքն է այսքա մխիթարանութեան, որը խորը անապրերութեան ցոյց տալէն դէպ ի այդ քաղաքը ու իններորդ դարու շէմքին Սեւանայ անապատը կնքեց իր անապատական կենցաղը :

Գեղարքունեաց երբեմնի աղօթաւայր, ուսումնաւէտ աշխարհի անապատները հետզհետէ համրել մարել էին ու Սեւանայ գեղածիծաղ լճի ափին վառուող աղօթարան ճրագները հանգել. մնացել էր Սեւանը եւ նա էլ թառամեց, թողնեց իր անապատ, մնալով լոկ ուխտատեղի, պատմական վայր Գեղարքունեաց աշխարհի :

Գեղեցիկ գաղափարութեամբ տաղանդաւոր գրող Շանթը իր «Հին Աստուածներ» դրամայում կարծես կրօնական կեանքի անկման գեղեցիկ նկարագիրն է տալիս իր նիւթն առնելով Սեւանայ մենաստանի պատմութիւնից : Սեւանայ անապատի հիմնադիր, դրամայի կենդրոնական անձ, Մաշտոց Հայրապետի-վանահօր բերանով քննադատելով այն եկեղեցին, որը կայ այժմ : Մի կողմից հնի անկումն, միւս կողմից նորի վերածնութիւնը այժմեան ու այն մարդու բերանով, որ Թ.—Ժ. դարուն, մեզնից 1000 տարից առաջ ուժեղ վերածնութեան հիմքն է դրել :

Ահա այդ իմաստալի քաղաքը հնի անկ-

ման եւ նորի վերածնութեան։ Վանահայրն ասում է վանականներին.

«Մենք բոլորս ալ, որ թողել ենք աշխարհը ու եկել անապատ, մեր հոգիին խորքը դեռ մէկ կտոր աշխարհ էինք բերել մեզի հետ։ Ներքին վայելքի ծածուկ կարօտ մը, թաղարկուած հաճոյքների բարակ ծարաւ մը, մեր անցած կեանքի, կռուի ու յուզումներու ամբողջ նուրբ ու կպչուն ցանց մը եւ ակամայ վերյուշներ։ Այս բոլորը դեռ մեզի հետ էր, երբ այս եկեղեցին կը շինէինք։ Այդ ծածուկ թաղարկուած յուզումներն են շինել այս եկեղեցին. աշխարհէն անապատ եկած, մեզի հետ ներս սպրդած աշխարհի այդ կարօտն է շինել այս եկեղեցին։ Աշխարհինն է այդ եկեղեցին, մեր Աստուծունը չէ։ Անոր կամարներուն տակ մենք այլեւս աղօթել չենք կրնար, այդ կամարները պէտք է քանդուին։ Մարդս ինք միայն կրնայ շինել իր Աստուծոյ նուիրուած տաճարը, իր մէջքով, ձեռքերով, իր խելքով։ Թէ ինչ ձեւ է ունենալու մեր նոր եկեղեցին, դեռ ես ինքս ալ որոշ չգիտեմ. ա՛ կը նստինք միասին ու կը խորհինք. կը խորհինք ու կը ստեղծենք[37]»։

[37] Լ. Շանթ, «Հին Աստուածներ», 114—115։

# ՅԱՒԵԼՈՒԱԾ Ա.

## Ցուցակ Սեւանայ մենաստանի վանահայրերի եւ միաբանների։

*Դժբախտաբար մենաստանի դիւանում հատուկտոր տեղեկութիւններ են մնացել միայն մենաստանի վանահայրերի եւ միաբանների համար։ Սեւանայ պատմութեան ամբողջութեան համար գրի եմ առնում այդ տեղեկութիւնները։*

### Ա. Վանահայրեր։

1. 1801 *Թ. Վանահայրն է Սարգիս Վ. Ոսկանապատցի, ըստ Մեսրոպ եպս. Սմբատեանի, «Գեղարքունի», էջ* 134։
2. 1818 *Թ. Ռափայէլ Վ. այր սրբակեաց, ըստ Մեսրոպ եպս. Սմբատեանի, «Գեղարքունի», էջ* 134։
3. 1819 *Թ. Յովհաննէս Վ. Հաչաջարցի, ըստ Մեսրոպ եպս. Սմբատեանի, «Գեղարքունի», էջ* 134։
4. 1840 *Թ. Մինաս Վ. Ճաթղուանցի, ըստ Մեսրոպ եպս. Սմբատեանի, «Գեղարքունի», էջ* 134։

5. 1841 Թ. Յարութիւն եպս. Գանձակեցի, ըստ Մեսրոպ եպս. Սմբատեանի, «Գեղարքունի», էջ 134:

6. 1842 Թ. Յովհաննէս Վ. Տփխիսեցի, ըստ Մեսրոպ եպս. Սմբատեանի, «Գեղարքունի», էջ 134:

7. 1849 Թ. Մկրտիչ Վրդ., ըստ մենաստանի դիւանի:

8. 1850 Թ. Կարապետ Վ. Բիւլբիւլեան, ըստ մենաստանի դիւանի:

9. 1861 Թ. Յարութիւն Վ. Մարջանեան, ըստ մենաստանի դիւանի:

10. 1869 Թ. Կարապետ Վ. Բիւլբիւլեան, ըստ մենաստանի դիւանի:

11. 1875 Թ. Յարութիւն Վ. Մարջանեան, ըստ մենաստանի դիւանի:

12. 1887 Թ. Կարապետ Վ. Բիւլբիւլեան, ըստ մենաստանի դիւանի:

13. 1892 Թ. Գալուստ Վ. Այվազեան, ըստ մենաստանի դիւանի:

14. 1892 Թ. Գրիգոր Վ. (Քուրա):

15. 1895 Թ. Սարգիս Վ. Փիլոյեան (1901 Թ. Եպիսկոպոս):

Բ. Միաբաններ:

1. 1849 Թ. Գեւորգ արեղայ, Գալուստ որդ., դպիր Յարութիւն, տիրացու Աւետիս, դպիրներ Ղազար, Կարապետ, Յարութիւն Տէր Սահակեան, տիրացու Սարգիս:

2. 1860 Բ. Պետրոս, Գրիգոր Վ. Ներ, Յարութիւն արեղայ Մարտանճեան, Յովսէփ Վ. Բէժանեան, Մովսէս Վ. Թովմասեան, Գրիգոր Վ. Տէր Գէորգեան, Բաղդասար արկ. Աւետիքեան: Տիրացուներ՝ Գրիգոր, Միքայէլ, Պետրոս, Դաւիթ, Յովհաննէս: Մահտեսիներ՝ Կարապետ, Ներսէս, Թորոս, Մխիթար եւ Սարգիս:

3. 1862 Բ. Պետրոս Վ. Մելքոնեան, Գալուստ Վ. Տրդատեան, Ներսէս Վ. Թորոսեան, Գրիգոր Վ. Տէր Գէորգեան, Յովսէփ Վ. Բէժանին, Բաղդասար աւգ. արկ., Սողոմոն աւգ. արկ. Օքոյեան, Աւետիք արկ. Սամուէլեան: Տիրացուներ՝ Յարութիւն, Փոքր Գրիգոր, Պետրոս, Միքայէլ, Յովհաննէս:

4. 1890 Բ. Յարութիւն Վ. Մարջանեան, Իգնատիոս Վ. Այվազեան, Գրիգոր Վ. Տէր Գրիգորեան, Գալուստ արղ. Յակոբեան, Գէորգ արղ. Տէր Յովհաննէսեան, Մամբրէ, Խորէն, Թադէոս արեղաներ, Սողոմոն եւ Եփրեմ սարկաւագներ:

5. 1896 Բ. Գալուստ, Մամբրէ, Մաթէոս, Խորէն, Գրիգոր վարդապետներ, Դաւիթ արեղայ, Սողոմոն, Եփրեմ սարկաւագներ, Մելքոն, Մանուկ, Սիմէոն, Վա–

Հան, Սարգիս, Ստեփան, Պօղոս, Արիստակէս տիրացուներ, Մկրտիչ, Դաւիթ, Աղեքսանդր, Սմբատ, Յարութիւն, Միքայէլ, Աւետիք եւ Կարապետ եղբայր մահտեսիներ:

## ՅԱՒԵԼՈՒԱԾ Բ.

### Սեւանայ մենաստանի Ելեւմից պատկեր:

Մենաստանի Ելեւմից մատեանները եւս կանոնաւոր պահուած չեն. բառական տարիներինը պակասում են, ուստի եւ պատկերը լրիւ չէ:

Մենաստանի մուտքի աղբիւրներն են եղել Յամարարերդ եւ Դոմաձոր գիւղերից հաւաքուած բաժբան, իւր ունեցած ջրաղացներից, կրպակներից ու տներից եկած արդիւնքը, այլ եւ սուրբ Նշանը նուիրակ վարդապետի ձեռքով գիւղերը շրջեցնելով հաւաքած հացահատիկները, անասունները: Բացի այդ, նուիրակը աշնանը շրջում էր գիւղերը, յատկապէս Կաւէից շրջանը եւ հաւաքում ընդեղէն, իւղ, պանիր, ձու: Մենաստան եկող ուխտաւորներից ստանում են խաչահամբոյր, մոմեղէն, այլ եւ նուէրներ զանազան տեսակի՝ թաշկինակներ խոտ, մատանի, ապարանջան եւ այլն, որ եւ վաճառում են ու դրամ դարձնում:

1. 1855 թ. Ցամաքաբերդից՝ ցորեն 2 խ. 35 լ., գարի 8 խ., հաճար 58 լ.։ Գոմաձորից՝ ցորեն 3 խ. 55½ լ., գարի 9 խ. 15½ լ., հաճար 52½ լ.։

Դրամական մուտք.

| | | | |
|---|---|---|---|
| Անցորդ | 1854 թ. | 53 ռ. | 12 կ. |
| մուտք | 1855 թ. | 1057 ռ. | 80½ կ. |
| ելք | 1855 թ. | 761 ռ. | 85½ կ. |

2. 1860 թ. Ցամաքաբերդից՝ ցորեն 8 խ. 5 լ., գարի 15 խ. 52½ լ., կտաւատ 76 լ., հաճար 3 խ. 52½ լ.։ Գոմաձորից՝ ցորեն 13 խ. 7 լ., գարի 23 խ. 50 լ., կտաւատ 40 լ., հաճար 4 խ. 3 լ.։

Դրամական.

| | | |
|---|---|---|
| Անցորդ . . | 795 ռ. | 94½ կ. |
| մուտք . . . | 2584 ռ. | 14 կ. |
| ելք . . . . . | 2386 ռ. | 65½ կ. |

Ցորենի խալուարն ծախուել է 23 ռուբլով, գարունը՝ 12 ռուբլով։

3. 1864 թ. Ցամաքաբերդից՝ ցորեն 12 խ. 30 լ., գարի 14 խ. 15½ լ., հաճար 2 խ. 62½ լ., կտաւատ 1 խ. 45 լ.։ Գոմաձորից՝ ցորեն 9 խ. 97½ լ., գարի 19 խ. 87 լ., հաճար 7 խ. 95½ լ., կտաւատ 41 լ.։

Ընդ ամէնը մնացորդի հետ մենաստանն ունեցել է՝ ցորեն 158 խ. 62 լ., գարի 88 խ. 83 լ., հաճար 21 խ. 90½ լ., կտաւատ 1 խ. 86 լ.:

Անասնեղէն ունեցել է 91 հատ:

Սուրբ Նշանը պտտեցնելուց հաւաքուել է ցորեն 21 խ. 46 լ., գարի 66 լ., նաեւ 162 գառ, 26 ուլ, 18 հորթ, 2 մաքի, 1 մողի:

Դրամական.

Մնացորդ . . 969 ռ. 61 կ.
Մուտք . . . 3738 ռ. 6½ կ.
Ելք . . . . 1455 ռ. 65½ կ.

Ցորենի խալուարն արժէր 22 ռ., գարունը 25 ռ.:

4. 1865 թ. Ցամաքաբերդից՝ ցորեն 7 խ. 52 լ., գարի 10 խ. 10 լ., հաճար 4 խ. 82 լ., կտաւատ 38 լ.: Գոմաձորից՝ ցորեն 7 խ. 92 լ., գարի 13 խ. 95 լ., հաճար 2 խ. 72 լ.:

Ի դէպ է յայտնեմ որ այս երկու գեղերի համար վանքը 1830 թուից վէճ է սկսում Մուստաֆա Բէգ անունով մէկի հետ, որը 1835 թուից ինքնագլուխ տիրում է գիւղերին: 1848 թուին միայն վէճը վճռուում է կառավարիչ սենատում յօգուտ վանքի:

*Դրամական.*

*Մնացորդ* . . 761 *ռ.* 2½ *կ.*
*Մուտք* . . . 3044 *ռ.* 66 *կ.*
*Ելք* . . . . 1241 *ռ.* 28½ *կ.*

*Սուրբ Նշանից արդիւնք՝ ցորեն* 40 *խ.* 33 *լ., գարի* 3 *խ.* 66 *լ., գառ* 225 *հատ, ուլ* 34, *մոզի* 10, *հորթ* 10, *խոյ* 5, *գոմշի ձագ* 1.։
*Ցորենը արժէր խալուարն* 24 *ռ., գարունը* 12 *ռ.*։

5. 1866 *թ. Ցամաքաբերդից՝ ցորեն* 12 *խ.* 26½ *լ., գարի* 21 *խ.* 54 *լ., հաճար* 4 *խ.* 70 *լ., կտաւատ* 46 *լ.*։ *Գոմաձորից՝ ցորեն* 15 *խ.* 85½ *լ., հաճար* 5 *խ.* 85 *լ., կտաւատ* 3 *լ.*։ *Սուրբ Նշանից՝ ցորեն* 31 *խ.* 44 *լ., գարի* 5 *խ.* 85 *լ., գառ* 146, *ուլ* 17, *հորթ* 6, *մոզի* 2 *հատ*։

*Դրամական.*

*Մնացորդ* . . 1098 *ռ.* 55½ *կ.*
*Մուտք* . . . 2196 *ռ.* 14 *կ.*
*Ելք* . . . . 1604 *ռ.* 11½ *կ.*

6. 1867 *թ. Ցամաքաբերդից՝ ցորեն* 13 *խ.* 12 *լ., գարի* 17 *խ.* 22 *լ., հաճար* 4 *խ.* 44 *լ., կտաւատ* 56 *լ.*։ *Գոմաձորից՝ ցորեն* 15 *խ.* 3½ *լ., գարի* 20 *խ.* 52 *լ., հաճար* 17 *խ.* 96 *լ.*։

*Սուրբ Նշանից՝ ցորեն 12 խ. 57 լ., գարի 10 լ., գառ 137, ուլ 25, հորթ 25, գոմշի ձագ 1։*

*Դրամական.*

*Ձեռագործ* . . . 586 *ռ.* 97½ *կ.*
*Մուտք* . . . 3148 *ռ.* 40½ *կ.*
*Ելք* . . . . 2333 *ռ.* 43 *կ.*

*Կովն արժէր 18 ռ. 60 կ., գառը 1—2 ռ.։*

*Անունդ միաբաններին՝ ալիւր 24 խ. 95 լ., բրինձ 4 խ. 67½ լ., հաճար 1 խ. 86½ լ., ոսպ 95½ լ., լոբի 35 լ., սոխ 1 խ. 1½ լ., իւղ 1 խ. 46 լ., պանիր 83 լ., ձէթ 2 խ. 81½ լ., ընկոյզ 22.000. ձուկ բաճակ 4 կարաս, գինի 5 կարաս, րաքի 2 կարաս։*

7. 1868 *թ. Յամաքաբերդից՝ ցորեն 7 խ. 53 լ., գարի 8 խ. 54 լ., հաճար 2 խ. 45 լ., կտաւատ 62 լ.։ Գոմաձորից՝ ցորեն 8 խ. 32½ լ., գարի 12 խ. 63 լ., հաճար 1 խ. 50 լ.։*

*Սուրբ Նշանից արդիւնք՝ ցորեն 10 խ. 12 լ., գառ 636, ուլ 53, թոխլի 278, պոչա 6—26, մաքի 26, այծ 17, մոզի 163, եզ 1, երինջ*

*Գառը 1 ռ., թոխլին 2 ռ., 127 հատ գեղարքունի 7 ռ. 60 կ.։ Նաւավարին՝ տարեկան 33 ռ. 80 կ.։*

8. 1869 Թ. Դրամական.

Մնացորդ . . 930 ռ. 87 կ.
Մուտք . . . 4543 ռ. 27 կ.
Ելք . . . . 2118 ռ. 22 կ.

Սուրբ Նշանից՝ ցորեն 8 խ. 58 լ., գառ 115, ուլ 7:

9. 1871 Թ. Դրամական.

Մնացորդ . . 2548 ռ. 97½ կ.
Մուտք . . . 4047 ռ. 43½ կ.
Ելք . . . . 3165 ռ. 53 կ.

Ցամաքաբերդից՝ ցորեն 6 խ. 53 լ., գարի 6 խ. 14 լ., հաճար 3 խ. 16 լ., կտաւատ 14 լ.: Գոմաձորից՝ ցորեն 6 խ., գարի 7 խ. 31 լ., հաճար 2 խ. 46 լ., կտաւատ 46½ լ.:

Անունդ միաբաններին՝ 31 խ. 5 լ. ցորեն, հաճար 5 խ. 62 լ., անասուն՝ կով 9, ցուլ 1, եզ 6, մոզի 13, հորթ 7, ձագ 1:

10. 1872 Թ. Դրամական.

Մնացորդ . . 881 ռ. 90½ կ.
Մուտք . . . 4069 ռ. 62½ կ.
Ելք . . . . 3665 ռ. 76½ կ.

Ցորենի խալուարն արժէ 16 ռ., գարունը 11 ռ.:
Ցամաքաբերդից՝ ցորեն 5 խ. 50

լ․, գարի 5 խ․ 25 լ․, հաճար 1 խ․ 75 լ․։ Գոմաձորից՝ ցորեն 5 խ․ 55 լ․, գարի 8 խ․ 55 լ․, հաճար 1 խ․ 75 լ․։

Ընդհանուր մուտքը՝ ցորեն 138 խ․ $79^{1}/_{2}$ լ․, գարի 57 խ․ $51^{1}/_{2}$ լ․, հաճար 3 խ․ 50 լ․, անասնեղէն 31 հատ։

11․ 1873 Թ․ Դրամական․

Մնացորդ . . 1603 ռ․ 86 կ․
Մուտք . . . 2736 ռ․ 20 կ․
Ելք . . . . 2371 ռ․ 90 կ․

Ցամաքաբերդից՝ ցորեն 5 խ․ 6 լ․, գարի 9 խ․, հաճար 3 խ․ 50 լ․։ Գոմաձորից՝ ցորեն 7 խ․ 50 լ․, գարի 12 խ․ 10 լ․, հաճար 1 խ․ 45 լ․։
6, գոմշի ձագ 2, հորթ 72, ձէթ 148 լ․ և 3 նուկի։

Դրամական․

Մնացորդ . . 814 ռ․ $97^{1}/_{2}$ կ․
Մուտք . . . 3627 ռ․
Ելք . . . . 2696 ռ․ 13 կ․

Իւղի լիտրը՝ 3 ռ․, կօշիկը 1 ռ․ 10 կ․։

12․ 1874 Թ․ Դրամական․

Մնացորդ . . 363 ռ․ 30 կ․
Մուտք . . . 3122 ռ․ 30 կ․
Ելք . . . . 1800 ռ․ 45 կ․

Յամաքաբերդից՝ ցորեն 7 խ. 74 լ., գարի 8 խ. 5 լ., հաճար 2 խ. 12 լ.։ Գամաձորից՝ ցորեն 6 խ. 72 լ., գարի 10 խ. 75 լ., հաճար 1 խ. 25 լ.։

Ընդհանուր գումար. ցորեն 83 խ. $47\frac{1}{2}$ լ., գարի 56 խ. $6\frac{1}{2}$ լ., բրինձ 4 խ. $6\frac{1}{2}$ լ., ճաւար 5 խ. 35 լ., լոբի 1 խ. 56 լ., իւղ 1 խ. 94 լ., պանիր 1 խ. $30\frac{1}{2}$ լ., ձէթ $53\frac{1}{2}$, գինի 10 կարաս։

13. 1875 Թ. Դրամական.

Մնացորդ . . 1320 ռ. $63\frac{1}{2}$ կ.
Մուտք . . . 3958 ռ. 12 կ.
Ելք . . . . 3494 ռ. $58\frac{1}{2}$ կ.

Մենաստանն ունեցել է՝ ցորեն 104 խ. $42\frac{1}{2}$ լ., գարի 59 խ. $59\frac{1}{2}$ լ., ալիւր 34 խ. 84 լ., ճաւար 6 խ. 54 լ., լոբի 1 խ. 67 լ., իւղ 1 խ. 74 լ., սիսեռ 20 լ., ձէթ $60\frac{1}{2}$ լ.։

14. 1876 Թ. Դրամական.

Մնացորդ . . 463 ռ. $60\frac{1}{2}$ կ.
Մուտք . . . 3080 ռ. $19\frac{1}{2}$ կ.
Ելք . . . . 2122 ռ. 79 կ.

Յամաքաբերդից՝ ցորեն 11 խ. 22 լ., գարի 8 խ. 40 լ., հաճար 4 խ. 60 լ., կորեկ 36 լ.։ Գամա–

ձորից՝ ցորեն 11 խ. 24 լ., գարի 11 խ. 36 լ., հաճար 2 խ. 56 լ., կորեկ 2 խ.։

15. 1877 Թ. Դրամական.

Անցորդ . . 957 ռ. 40½ կ.
Մուտք . . . 5487 ռ. 73 կ.
Ելք . . . . 4294 ռ. 36 կ.

Ցամաքաբերդից՝ ցորեն 14 խ. 4 լ., գարի 9 խ. 90 լ., հաճար 4 խ. 80 լ.։ Գոմաձորից՝ ցորեն 8 խ. 58 լ., գարի 19 խ. 63 լ., հաճար 2 խ. 69 լ., կտաւատ 15 լ.։

Ընդհանուր պտուղներ՝ ցորեն 155 խ. 18 լ., գարի 56 խ. 21½ լ., ալիւր 43 խ. 73 լ., բրինձ 5 խ. 39½ լ., ձաւար 4 խ. 50 լ., լօբի 1 խ. 6½ լ., իւղ 2 խ. 49 լ., պանիր 57½ լ., սիսեռ 50 լ., ոսպ 32½ լ., գինի 4 կարաս։

16. 1887 Թ. Դրամական.

Անցորդ . . 1193 ռ. 37 կ.
Մուտք . . . 6492 ռ. 16½ կ.
Ելք . . . . 3893 ռ. 44 կ.

Ցամաքաբերդից՝ ցորեն 6 խ. 60 լ., գարի 7 խ., հաճար 1 խ. 50 լ.։ Գոմաձորից՝ ցորեն 2 խ. 34 լ., գարի 11 խ. 20 լ., հաճար 63 լ.։

17. 1879 Բ. Դրամական.

Մնացորդ . . 2598 ռ. 72 կ.
մուտք . . . 8273 ռ. 67½ կ.
ելք . . . . 6964 ռ. 63 կ.

Ցամաքաբերդից՝ ցորեն 9 թ. 55 լ., գարի 11 թ. 45 լ., հաճար 2 թ. 50 լ.։ Դամաձորից՝ ցորեն 5 թ. 12 լ., գարի 15 թ. 65 լ., հաճար 4 թ. 51 լ.։

Ընդհանուր մուտք՝ ցորեն 74 թ. 15 լ. — ելք 39 թ. 42 լ., գարի 53 թ. 57½ լ. — ելք 30 թ. 81 լ.։

18. 1880 Բ. Դրամական.

Մնացորդ . . 1309 ռ. 4½ կ.
մուտք . . . 5102 ռ. 55 կ.
ելք . . . . 3222 ռ. 55 կ.

Ցամաքաբերդից՝ ցորեն 3 թ. 70 լ., գարի 5 թ. 85 լ., հաճար 1 թ. 2 լ., կորեկ 20 լ.։ Դամաձորից՝ ցորեն 10 թ. 55 լ., գարի 15 թ. 29 լ., հաճար 2 թ., կորեկ 55 լ.։

19. 1881 Բ. Դրամական.

Մնացորդ . . 1880 ռ. 6½ կ.
մուտք . . . 5095 ռ. 92½ կ.
ելք . . . . 5104 ռ. 37 կ.

Ցամաքաբերդից՝ ցորեն 7 թ. 83½ լ., գարի 10 թ. 51½ լ.,

հաճար 2 խ. $65\frac{1}{2}$ լ.։ Գոմաձորից՝ ցորեն 10 խ. $42\frac{1}{2}$ լ., գարի 24 խ. 24 լ., հաճար 2 խ. 70 լ.։

Մինչեւ ռուսաց տիրապետութիւնը Ցամաքաբերդ եւ Գոմաձոր գիւղերի բնակիչների թիւը 100 հոգի էր. 1880 թուին լինում է 748 հոգի։

20. 1882 Թ. Դրամական.

Մնացորդ . . 801 ռ. $55\frac{1}{2}$ կ.
Մուտք . . . 4236 ռ. $46\frac{1}{2}$ կ.
Ելք . . . . 2726 ռ. 62 կ.

Ցամաքաբերդից՝ ցորեն 6 խ. 20 լ., գարի 8 խ. 50 լ., հաճար 4 խ.։ Գոմաձորից՝ ցորեն 10 խ. 64 լ., գարի 20 խ. 77 լ., հաճար 3 խ. 60 լ.։

21. 1883 Թ. Դրամական.

Մնացորդ . . 1599 ռ. $84\frac{1}{2}$ կ.
Մուտք . . . 4698 ռ. $78\frac{1}{2}$ կ.
Ելք . . . . 3528 ռ. 40 կ.

Ցամաքաբերդից՝ ցորեն 3 խ. 50 լ., գարի 5 խ. 70 լ., հաճար 2 խ. 57 լ.։ Գոմաձորից՝ ցորեն 7 խ. 30 լ., գարի 11 խ. 20 լ., հաճար 3 խ. 30 լ.։

Ընդամենն ստացել է ցորեն 146 խ. 81 լ., գարի 82 խ. $53\frac{1}{2}$ լ.,

ալիւր 49 խ. 31 լ., բրինձ 5 խ. 62 լ., ձաւար 4 խ. 23 լ., լոբի 2 խ. 80 լ., իւղ 2 խ. 61 լ., պանիր 1 խ. 11 լ., ոսպ 53 լ., ձէթ 22 լ., գինի 8 կարաս:

22. 1884 Թ. Դրամական.

Մնացորդ . . 1107 ռ. 38½ կ.
Մուտք . . . 3427 ռ. 1 կ.
Ելք . . . . 1908 ռ. 59 կ.

Ծամաքաբերդից՝ ցորեն 8 խ. 22 լ., գարի 9 խ. 65 լ., հաճար 4 խ. 25 լ.: Գոմաձորից՝ ցորեն 6 խ. 50 լ., գարի 20 խ. 40 լ., հաճար 3 խ. 20 լ.:

23. 1885 Թ. Դրամական.

Մնացորդ . . 1518 ռ. 42 կ.
Մուտք . . . 3420 ռ. 68 կ.
Ելք . . . . 2830 ռ. 66 կ.

Ծամաքաբերդից՝ ցորեն 19 խ. 20 լ., գարի 13 խ. 20 լ., հաճար 5 խ.: Գոմաձորից՝ ցորեն 18 խ. 28 լ., գարի 15 խ. 57 լ., հաճար 4 խ. 60 լ.:

24. 1886 Թ. Դրամական.

Մնացորդ . . 590 ռ. 2 կ.
Մուտք . . . 3834 ռ. 2 կ.
Ելք . . . . 1740 ռ. 5 կ.

Ցամաքաբերդից՝ ցորեն 11 խ. 10 լ., գարի 5 խ. 4 լ., հաճար 2 խ. 20 լ.։ Գոմաձորից՝ ցորեն 10 խ. 5 լ., գարի 11 խ. 6 լ., հաճար 3 խ. 4 լ.։

25. 1890 Թ. Դրամական.

Մնացորդ . . . 2480 ռ. $88\frac{1}{2}$ կ.
մուտք . . . 5803 ռ. $53\frac{1}{2}$ կ.
ելք . . . . 2369 ռ. 86 կ.

Ցամաքաբերդից՝ ցորեն 11 խ. 16 լ., գարի 6 խ. 5 լ., հաճար 2 խ. 5 լ.։ Գոմաձորից՝ ցորեն 7 խ. 15 լ., գարի 7 խ. 35 լ., հաճար 65 լ., կորեկ 4 լ.։

1892 Թ. մուտք՝ 3873 ռ. 36 կ. — ելք՝ 1170 ռ. 66 կ.։
1893 Թ. մուտք՝ 3836 ռ. 32 կ. — ելք՝ 4102 ռ. 80 կ.։
1894 Թ. մուտք՝ 1878 ռ. 33 կ. — ելք՝ 1939 ռ. 31 կ.։
1895 Թ. մուտք՝ 1439 ռ. 72 կ. — ելք՝ 1939 ռ. 31 կ.։
1895 Թ. մուտք՝ 1493 ռ. 72 կ. — ելք՝ 3055 ռ. 47 կ.։
1896 Թ. մուտք՝ 3531 ռ. 2 կ. — ելք՝ 2739 ռ. 37 կ.։
1897 Թ. մուտք՝ 5477 ռ. 79 կ. — ելք՝ 3940 ռ. 33 կ.։

1898 թ. մուտք՝ 4546 ո. 29 կ. — ելք՝ 4303 ո. 73 կ.։

1899 թ. մուտք՝ 10.582 ո. 24 կ. — ելք՝ 6502 ո. 79 կ.։

1900 թ. մուտք՝ 8276 ո. 76 կ. — ելք՝ 8349 ո. 47 կ.։

1909 թ. մուտք՝ 6321 ո. 82 կ. — ելք՝ 6317 ո. 67 կ.։

1897 թուից ելքերն սկսում են աւելանալ, որովհետեւ նոր վանահայր Սարգիս Վ.ք սկսել էր մենաստանում նոր շէնքեր կառուցանել տալ։ 1901 թուին մենաստանն ունէր 4006 ո. 74 կ. դրամագլուխ։

Մուտքի աղբիւրներն էին. — Սուրբ Նշանին նուէրները, այլեւայլ նուէրներ, խաչահամբոյր, ժամուցադրամ, մոմագին, մատաղագին, մորթա, ճակատի ակիների, շուշպաների, անասունների, հացահատիկների վաճառումից, կալուածներից, ատկաներ եւ այլ եւ այլք։ Ելքի աղբիւրներն են եղել — ժամուցադրամ միաբաններին, ռոճիկ ծառաներին, աղքատներին, սնունդ, վառելիք, հագուստ միաբաններին, կահաւորութեան, ճանապարհածախսքի միաբաններին, գրքի թերթերի, կալուածական հարկ, մանր ծախքեր, նոր շինութիւնների ծախք։

Միաբանութիւնը եղել է 1895ին 30 հոգի. 1896ին 25 հոգի. 1897ին 25 հոգի. 1898ինը յայտնի չէ. 1899ին 22 հոգի։

1912 թուին ռուսական միապետութեան

*օրէնքով Կաթողիկոսի կալուածատէրերի գիւ-
ղերը յետ գնեցին. Նոյնպէս եւ Հայ եկեղե-
ցունը: Սեւանի երկու գիւղը՝ Ծամաքա-
բերդը եւ Գոմաձորը յետ գնեցին:*

*Ներկայումս Սեւանը չունի իր նախ-
կին կալուածների եւ ոչ մէկը:*

*Մենաստանում մնում է մէկ վարդա-
պետ: Նրա մնացած երեք միաբանները պաշ-
տօնավարում են այլ վանքերում. երկուսը
Մ. Աթոռում, մէկը Դնդէվազի վանա-
հայր է:*

Սեւանի անապատի պատմութեան վերա-
բերող աշխատանքներ:

1· *Մանուէլ Վ. Կիւմիւշխանեցի. Պատ-
մութիւն անցից անցելոց Սեւանայ Վա-
նուց:*
2· *Զաքարիա Եպս. Գուլասեան. Վէպ
ծովակին Գեղամայ:*
3· *Սարգիս Վ. Փիրոյեան. Պատմութիւն
Սեւանայ, «Հովիւ» շաբաթաթերթ*
1906 *թ.:*
4· *Ստեփանոս Օրբէլեան, Ա.* 217—218:
5· *Թովմ. Արծրունի,* 273 *եր.:*
· *Առաքել, էջ* 146, 250—251 *եւ այլն:*
7· *Յովհ. Դրասխանակերտցի, էջ* 186, 189,
229—230:
8· *Սամուէլ Անեցի, էջ* 95:
9· *Կիրակոս Գանձակեցի, էջ* 45:
10· *Ա. Լաստիվերտցի, էջ* 15:

11. Միքայէլ Առաքի, էջ 38։
12. Առաքէլ Դաւրիժեցի, էջ 256—260։
13. Սիմոն Կաթ. Ջամբռ, էջ 284։
14. Յով. Եպ. Շահխաթունեան, Ստորագրութիւն Բ. 208—235։
15. Սարգիս արքեպ. Ջալալեան ճանապարհորդութիւն Բ. մ. 108։
16. Մեսրոպ արքեպ. Սմբատեան, «Գեղարքունի» 110, 313—423։
17. Ալիշան, Յուշիկք Ա. 105. Սիսական 29—32։
18. Սեւանայ լիճը եւ վանքերը. «Արարատ» 1928 թ. գիրք Ա. 44—58։
19. Թիֆլիզեցի—էջմիածին. Գ. Ե. Ի. «Արձագանք» 1882 թ., Թ. 32, 508—509։
20. Յիշատակարան Սանահինու Վ.-ի «Արարատ» 1876, Յունուար 17—19 եր.։
21. Նոյն Սանահնաւի յիշատակարանը հրատարակութիւն — ծանօթութիւններ. Գր. Տէր-Պօղոսեանց, Տփխիս 1913։



